# ԹՈՂ ԱՍՏՎԱԾԱՇՈՒՆՉԸ ԽՈՍԻ

[ Հայերեն - Armenian – أرميني ]

Աբդուլ Ռահման Դիմաշկի

Թարգմանությունը:
**EUROPEAN ISLAMIC RESEARCH CENTER (EIRC)**
& Աննա Ռ. Հակոբ
Ստուգող հանձնաժողով:
Աբու Առամ

2015 - 1436

IslamHouse.com

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆԸ

## ԿԱՆԱՅՔ ԱՍՏՎԱԾԱՇՆՉԻ ՄԵՋ



## ՌԱՍՍԱՅԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԱՍՏՎԱԾԱՇՆՉԻ ՄԵՋ

Հեթանոսները Աստվածաշնչի մեջ
Միայն հեթանոսներից վաշխառություն վերցնելը
Ովքե՞ր են շները և խոզերը
Միայն 144000 Սիոնիստների են փրկել և տեղափոխել Երկինք
Կանանց, երեխաների, կենդանիների սպանդը
Սպանդը, ստրկությունը, առևանգությունը
Կանանց առևանգությունը
Նրանց սպանությունը և ունեցվածքի հափշտակումը
Վրեժ, սուր, կրակ
Աստվածաշունչը սխալ է ներկայացնում Աստծո ողորմածությունը
Սուրը և կրակը Նոր Կտակարանի մեջ
Հիսուսը իր աշակերտների հետ
Հիսուսը իր մոր հետ

## ԱՍՏԾՈ ԱԾԱԿԱՆՆԵՐԸ ԱՍՏՎԱԾԱՇՆՉԻ ՄԵՋ

Հակոբը ըմբշամարտի մեջ է մտնում Աստծո հետ
Արդյո՞ք Աստված հանգստի կարիք ունի
Արթնացիր Աստված
Արդյո՞ք Նա մոռանում է
Արդյո՞ք Նա ափսոսում է
Արդյո՞ք Նա նախատում է իրեն
Արդյո՞ք Նա մարդկանց պատվիրում է գողանալ
Արդյո՞ք Նա ծափ է տալիս

ԱՍՏՎԱԾԱՇՆՉԻ ՎԱՎԵՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Դուք կարող եք ինքներդ ձեզ հարցնել. Ինչպե՞ս ես կարող եմ իմանալ,որ այս գիրքը,որին ես հետևում եմ Աստծո իրական խոսքն է: Ինչպե՞ս ես կարող եմ ասել, թե բազմաթիվ «Սուրբ Գրքերից» որն է Աստծո իրական խոսքը:

Արդյո՞ք իմ Սուրբ գիրքը կեղծ գրքերից մեկն է.

Ինչպե՞ս կարող եմ ես հավատալ մի ժամանակ իմացած կրոնին, որի գիրքը ըստ իս, Սուրբ չէ:

Ինչպե՞ս կարող է այս պատահել իրական հավատքի մեջ, որի գրքի կեղծությունը այնքան ակնհայտ է, գիրք, որը լի է սխալներով, հակասություններով և պատմական աղավաղումներով, որը գրվել է մարդու ձեռքով:

Ես կարիք ունեմ ընթերցելու այն, միայն գիտակցելու, որ այն Աստծո խոսք չէ:

Սակայն ինչպե՞ս ես կարող եմ արդարացիորեն դատել, քանի որ անկողմնակալ եմ և ի վիճակի չեմ ընդունել որևէ քննադատություն:

Արդյո՞ք ես իրոք փնտրում եմ ճշմարտություն, թե ես դրա թշնամին եմ:

Խնդիրը լուծելու համար, ճշմարտության փնտրողը պետք է լինի պարզ, հեռատես և արդարամիտ և պետք է ունենա.

- գիտական, ուշադիր և մտավոր վերաբերմունք
- ճշմարտությունը գտնելու ցանկություն, անկախ նրանից, թե որտեղ է այն.
- բաց միտք,զուրկ սնոտիապաշտությունից և մոլեռանդությունից:

Ճշմարտության փնտրողը պետք վախենա կեղծիքից, աջակցի ճշմարտությանը և ունենա հաստատուն հանձնառություն:

1. Մենք անկեղծորեն և ազնվորեն շրջվում ենք դեպի մեր Տերը, փնտրում ենք Նրա առաջնորդությունը, որպեսզի հասնենք ճշմարտությանը.

2. Որքա՞ն մենք կարիք ունենք ճշմարտության հաստատուն տեսիլքի և ամուր հանձնառության: Որքա՞ն հուսահատ է մեր ցանկությունը մեր Տիրոջից առաջնորդություն և ճշմարտությանը հետևելու օգնություն խնդրելը:

Քանի որ առանց Աստծո օգնության և առաջնորդության, ոչ ոք երբեք չի գտնի ճշմարտությունը:

Կասկած չկա, որ դժվար չէ գտնել Աստծո կրոնը: Իրոք, այդ ճիշտ է մեզ համար: Եթե այդպես չլիներ, ապա Դատաստանի օրը մարդիկ պետք է բողոքեին ասելով.

«Ով, Տեր, արդյո՞ք Դու ուղարկել ես Քո գիրքը, որին մենք պետք է հետևենք և թողնենք մեր կեղծ կրոնը:»

Մեր պարտքն է ուժերի ներածին չափով ապահովել մեր հաջողությունը Հետագա կյանքում:

Սակայն, մենք մրցում ենք մեկս մյուսի հետ, պայքարում ենք, վազելով այս կյանքի ետևից, փորձելով լիարժեք վայելել այն:

Այդ դեպքում, ինչու՞ մենք չենք վազում Դրախտի ետևից, որտեղ ոչ ոք չի տառապում կամ մահանում, կամ նրանց չի մոտենում աղետը կամ հոգնածությունը և որի հրճվանքը մարդկային աչքը երբեք չի տեսել, ականջը չի լսել և ոչ մի սիրտ չի երազել:

Ի՞նչ է կատարվում մարդկանց հետ, նրանք չեն պայքարում Հետագա կյանքի լավագույնի համար: Արդյո՞ք այդ ճիշտ չէ, որ մարդիկ Դատաստանի Օրը կբաժանվեն երկու խմբերի. Հավատացյալների և անհավատների:

Նրանց կտանեն երկու տարբեր ուղղություններով.

Մեկ ուղղությունը Դրախտ և մյուսը Դժոխք:

Որ նրանք կունենան երկու ավարտ.

Ուրախ և թշվառ.

Այսպիսով, ինչու՞ ենք մենք անտարբեր Հետագա Կյանքի նկատմամբ, որը հավիտյան բնակության վայր է: Հավերժություն կամ Դրախտում, կամ էլ Դժոխքում:

Պատկերացրեք, որ դուք մահվան շեմին եք, հաշվելով ձեր վերջին շունչը, հրաժեշտ տալով ձեր սիրելի կյանքին, որին ամրացված էր ձեր սիրտը, մինչ դեռ դուք համոզված եք, որ դուք ճիշտ կրոնի ուղղու վրա չեք, որ դուք հետևում եք կեղծ կրոն, որը չի գոհացնում ձեր Տիրոջը:

Մտածեք այս ծայրահեղ և սարսափելի վայրկայանի մասին, երբ դուք կթողնեք այս կյանքը, տանելով ձեր հետ կեղծ կրոնը և կեղծ հավատքը: Եվ հիշեք, որ չի լինի որևէ փրկություն որևէ մեկի համար, ով չի հետևի Աստծո իրական կրոնին:

Երկրային ամենակարևոր առաջադրանքն է գտնել այս իրական հավատքը, դուք փորձության եք ենթարկվում որպեսզի պարզ դառնա, թե արդյոք դուք գտել եք այդ, տեսնել արդյոք դուք կապված եք դրան, իրագործում եք այդ և հավատարիմ եք դրան, թե ոչ:

Այս է ձեր գոյության միակ պատճառը, փնտրել ճշմարտությունը և հավատարիմ մնալ : Սակայն, եթե դուք ձախողեք և գաք Աստծո մոտ ինչ որ այլ բանով քան Նրա կրոնն է, կռապաշտ կրոնով, բազմաստվածությամբ կամ ցեղային կրոնով:

Մենք պետք է աշխատենք մեր փրկության համար այսօր, լրջորեն, քանի որ վաղը կարող է շատ ուշ լինել:

Ճշմարտությունը հեշտ գտնելու համար, մենք պետք է հետևենք մի քանի պարզ կանոնների.

1-Մենք պետք է լինենք անկեղծ և ճշմարիտ, որպեսզի փնտրենք հենց ճշմարտությունը, այլ ոչ թե այլ բան:

2-Մենք պետք է հաճախ աղոթենք Աստծոն, որպեսզի բացենք մեր սրտերը ճշմարտության հանդեպ և չմոռանանք, որ մեր սրտերը Նրա ձեռքերում են, Նա կարող է փոխել այն, ինչ մեր սրտերում է ինչպես Նա է ցանկանում և գիտի, թե ինչ են մտադրվել մեր սրտերը,մինչ մեր ձեռքերը բարձացվել են դեպի Նա :

Աստված գիտի,թե երբ եք դուք անկեղծորեն փնտրում ճշմարտությունը և այսպիսով, Նա կլուսավորի ձեր սրտերը և կբացի այն ճշմարտության հանդեպ: Եվ, Նա գիտի, թե երբ դուք այդ չենք ցանկանում, այսպիսով Նա կկուրացնի ձեր սրտերը, որպեսզի դուք մնաք խավարի մեջ:

Մերօրյա խնդիրը այն չէ, որ մենք չենք կարդում, այլ որ մենք հպարտանում և անարդարաբար համոզված մեզ: Մենք հակված ենք ծայրահեղության և փնտրում ենք արդարացումներ կեղծիքին:

Որոշ մարդիկ տեսնում են սև և ասում են ՛սպիտակ՛: Ոմանք ամուր կառչում են իրենց ընտանիքների

կրոնին, ոչ մի այլ պատճառ չունենալով, բացառությամբ նրա, որ նրանց ընտանիքներն են հետևում: Կրոնը դառնում է մի բան, որը նրանք ժառանգում են ինչպես անունը, գումարը, տները և կահույքը:

Երբեմն մարդիկ կարդում են որպեսզի միայն իմանան, սակայն առանց որևէ ցանկության օգուտ քաղելու իրենց գիտելիքներից և չնայած նրանք գիտեն, որ պետք է ուղղորդություն խնդրեն Աստծոց, նրանք չեն անում այդ:

Ընթերցելու ընթացքում դուք պետք է պատրաստ լինեք գտնելու ճշմարտությունը և փոխեք ձեզ, ըստ ձեռք բերվածի: Այս տեսակի ընթերցանությունը կարող է ի շահ գործել:

Ճշմարտությունը,գիտակցելու պահին, կարող է ձեզ շոկի մեջ թողնել, այն կարող է շատ ծանր և դաժան լինել ընկալման համար : Սակայն այն չի փոխի փաստը, որ ճշմարտությունն է,որը մենք պետք է ընդունենք:

Մինչ ժխտելը, մենք պետք է արտացոլենք այդ և գիտակցենք, որ եթե համբերատար չլինենք լսելու այսօր, մենք համբերատար չենք լինի պատժի ժխտման հետ վաղը:

Մտածեք դրա շուրջ: Որքան դուք կարող եք զղջալ սխալ որոշման համար վաղը, Դատաստանի օրը, երբ Աստծո դատը հասնի ձեզ և դուք ձախողեք: Ինչպիսին կլինի ձեր արձագանքը:

Մի խաբվեք մյուսների քաղցր խոսքերով, ովքեր հույս ունեն տանելլ ձեր մտքերը հեշտ ուղղու, ասելով. «Սպասեք վերջին օրվան, սպասեք ամպին, որը կտանի Դրախտ միայն այն պատճառով, որ դուք հավատացել եք, որ այս մարդը Աստված է:»

## Գիտելիքի դարը չի վերացնում ծայրահեղությունը:

Անցյալում, գաղափարները կապված էին իրենց գյուտարարներից, եթե նա հայտնի գիտակ, փիլիսոփա է, նրա գաղափարները ընդունվում են, այլապես, նոր գաղափարները մերժվում են որպես կեղծ: Հանճարեղ մարդը ունի մեծ տեսություն, և աննշան մարդը ունի անօգուտ գաղափարներ:

Սխալ է կարծել, որ ծայրահեղությունը անցյալի բան է,որը մեր ժամանակներում և քաղաքակրթության մեջ այլևս գոյություն չունի:

Սխալ է կարծել, որ այն այսօրվա աշխարհում չի կարող տեղ գտնել և գիտելիքի դարը բոլոր մարդկանց դարձրել է ողջամիտ և լայնամիտ: Քսաներրորդ դարն է, վերլուծության և մտքի դարը, որտեղ արդեն իսկ որոշված է, որ ճշմարտության վերադարձը ավելի լավ է, քան խորտակիչ սխալը:

Փաստորեն, մեր մեջ դեռ գոյություն ունի ծայրահեղությունը, շատ մարդիկ իրենց ցանկությամբ շրջվում են դեպի քարերը, փակում են իրենց աչքերը և

ականջները,ժխտում են գիտելիքի ամեն ուղղի, որը տանում է մարդկանց սրտերը:

Ունենալով լսողություն,նրանք խուլ են և ունենալով տեսողություն,կույր:

Այս մարդիկ ոչ սիրում են լսել ճշմարտությունը, ոչ էլ կարող են թողնել մյուսներին լսել:

## ԱՍՏՎԱԾԱՇՈՒՆՉԸ ԸՆԹԵՐՑԵԼՈՒՑ ՀԵՏՈ

Աստվածաշունչը ուշադիր և լիարժեք ընթերցելուց հետո, ես գտա որ այն ներառում է հետևյալ տեքստերը.

1- Կեղծ տեքստեր, որոնք աղճատում են Աստծո հատկանիշները.

2-Կեղծ տեքստեր, որոնք աղճատում են Մարգարեներին, կեղծորեն մեղադրելով նրանց դավաճանության, անբարոյականության և կռապաշտության մեջ:

3-Անպարկեշտ հեքիաթներ, որոնք լի են գրաֆիկական մարմնական մանրամասնություններով:

4-Տարօրինակ պատմություններ, ինչպիսիք են ծառերի պատմությունը, որոնք կոչ են անում ծառերին, իրենց իսկ միջից նախագահ ընտրել:

Շատերը այս բաների մասին ոչինչ չգիտեն: Պատճառ կարող են հանդիսանալ.

- Աստվածաշնչի ծավալը, ավելի քան 3000 էջ, որը շատերը դժվարանում են ընթերցել:
- Փաստը, որ շատ քրիստոնյաներ չեն ընթերցում Աստվածաշունչը, սակայն ըստ սովորության հաստատում են այդ:
- Քահանաների գործունեությունները, ովքեր մարդկանց համար ընթերցում են միայն այն, ինչ նրանք են ընտրում նրանց իմացության համար:
- Այսպիսով, մինչ գրքի հաջորդ էջին անցնելը, ես խորհուրդ եմ ձեզ տալիս.
- Տեքստերին վերաբերել խոնարհաբար և խուսափել ծայրահեղությունների գիրկը ընկնելուց, քանի որ այն Սատանայի գայթակղությունն է,մարդկանց և ճշմարտության միջև:
- Դուք ձեր Տիրոջը կոչում եք բացել ձեր սրտերը դեպի ճշմարտությունը.
- Եկեք փորձենք երկուսն էլ, և հեղինակը, և ընթերցողը,խնդրել մեր Տիրոջը միշտ առաջնորդել մեզ դեպի ճշմարտությունը:

Ամեն.....

## ՄԱՐԳԱՐԵՆԵՐԸ, ՍԱԿԱՅՆ ՄԵՐԿ

(Ծննդոց 9:21 -22) «Նա խմեց դրա գինուց, հարբեց ու մերկացաւ իր տան մէջ: Քամը՝ Քանանի հայրը, տեսաւ իր հօր **մերկութիւնն** ու դուրս գնալով՝ այդ մասին պատմեց իր երկու եղբայրներին:»

(Թագավորություններ Ա 19:23-24) «Աստծու հոգին իջաւ նրա վրայ,... Նա **հանեց իր զգեստները** ու նրանց առջեւ մարգարէանում էր: Ամբողջ գիշեր ու ցերեկ նա **մերկ** ընկած էր գետնին»

(Թագավորություններ Բ 6:20-21) «Դաւիթը յետ դարձաւ իր տունն օրհնելու. նրան ընդառաջ ելաւ Սաւուղի դուստր Մեղքողը եւ, ողջունելով նրան, ասաց. «Վայե՞լ էր Իսրայէլի արքային, որ այսօր իր աղախինների ու ծառաների առաջ **մերկանայ,** ինչպէս մերկանում են պարողները»: Դաւիթն ասաց Մեղքողին. «Ես պիտի **պարեմ** Տիրոջ առջեւ.....»

(Ելք 15:20) Մարիամ մարգարէն « Ահարոնի քոյրը, իր ձեռքն առաւ թմբուկը, եւ բոլոր կանայք գնացին նրա յետեւից» թմբուկ խփելով ու պարելով:

## ԱՆԲԱՐՈՅԱԿԱՆՆԵՐ

(Դատավորներ 14:19) «Տիրոջ հոգին աջակցեց Սամփսոնին, նա իջաւ Ասկաղոն, այնտեղ երեսուն մարդ սպանեց...»

(Դատավորներ 15:5) «Նա ջահերը կրակով վառեց եւ արձակեց այլազգիների հնձի մէջ, այրեց ցորենի շեղջերը, առաջուց հնձուածները, դէզերն ու չհնձուած ցորենը, մինչեւ անգամ այգիներն ու ձիթենիները:»

(Դատավորաց 16:1) «Սամփսոնն այնտեղից գնաց Գազա, այնտեղ **մի պոռնիկ կին** տեսաւ եւ մտաւ նրա մօտ:»

## ՂՈՎՏԻ ԴՈՒՍՏՐԵՐԸ ԱՐՅՈՒՆ ԱՊՂԾՈՒԹՅՈՒՆ ԳՈՐԾԵՑԻՆ ՆՐԱ ՀԵՏ

(Ծննդոց 19:30 -36) «Ղովտը ելաւ Սեգորից եւ լեռը բարձրացաւ, որովհետեւ վախենում էր մնալ Սեգորում: Նրա հետ էին նաեւ իր երկու դուստրերը։ Ինքն ու իր երկու դուստրերը միասին բնակուեցին այդ լերան մի քարայրում:»

«Աւագ դուստրն ասաց կրտսերին. «Մեր հայրը ծերացել է, եւ երկրում չկայ մէկը, որ մեզ հետ պառկի, ինչպէս ողջ աշխարհի կարգն է:» «**Արի գինի խմեցնենք մեր հօրը, պառկենք նրա հետ** ու մեր հօրից զաւակ ունենանք»: Նրանք իրենց հօրը գինի խմեցրին այդ գիշեր։ **Աւագ դուստրն այդ գիշեր պառկեց իր հօր հետ, իսկ Ղովտը չիմացաւ նրա պառկելն ու վեր կենալը**:»

«Առաւօտեան աւագն ասաց կրտսերին. «Ես երէկ պառկեցի իմ հօր հետ։ Նրան այս գիշեր էլ գինի

խմեցնենք, եւ դու մտի՛ր, պառկի՛ր նրա հետ, որ զաւակ ունենանք մեր հօրից»:

«Այդ գիշեր էլ գինի խմեցրին իրենց հօրը, եւ **կրտսերը պառկեց իր հօր հետ**: Ղովտը չիմացաւ նրա պառկելն ու վեր կենալը»

**Ղովտի երկու դուստրերն էլ յղիացան իրենց հօրից**:»

## ՅՈՒԴԱՆ ԻՐ ՀԱՐՍԻ ՀԵՏ

Յուդան դավաճանեց իր հարսի, Թաքմարի հետ:

(Ծննդոց 38:15- 24) «Երբ Յուդան տեսաւ նրան, կարծեց, թէ բոզ է, որովհետեւ նա երեսը ծածկել էր, ուստի ինքը նրան չճանաչեց:
«Իր ճանապարհը թեքելով՝ Յուդան գնաց դէպի նա եւ ասաց. «Թո՛յլ տուր մտնեմ ծոցդ»: Նա չգիտէր, որ դա իր հարսն է: Սա ասաց. «Ի՞նչ կը տաս ինձ, եթէ մտնես ծոցս»:

Նա պատասխանեց. «Քեզ իմ հօտից այծի ուլ բերել կը տամ»: Սա ասաց. «Իսկ մինչեւ բերել տալդ գրաւ կը տա՞ս»: Նա ասաց. «Ի՞նչ գրաւ տամ քեզ»: «Սա ասաց. «Տո՛ւր մատանիդ, մանեակդ եւ այն գաւազանը, որ քո ձեռքին է»: Եւ նա **մտաւ նրա ծոցը**: Թամարը յղիացաւ նրանից

....Երեք ամիս յետոյ Յուդային յայտնեցին, թէ՝ «Պոռնկացել է քո հարս Թամարը եւ ահա **պոռնկանալու պատճառով յղիացել է**»

## ԴԱՎԻԹԸ ԻՐ ՀԱՐևԱՆԻ ԿՆՈՋ ՀԵՏ

(Թագավորություններ Բ 11:2-24) «Երեկոյեան կողմ, երբ Դաւիթն իր անկողնից ելնելով ման էր գալիս թագաւորական պալատի տանիքի վրայ, տեսաւ, որ **մի կին լողանում էր տանիքի վրայ:**

«Այդ կինը արտաքինով շատ գեղեցիկ էր: Դաւիթը մարդ ուղարկեց ու հարցուփորձ արեց այդ կնոջ մասին: Նրան ասացին. «Չէ՞ որ դա քետացի Ուրիայի կինն է, Եղիաբի դուստր Բերսաբէէն»:

....«Դաւիթը պատգամաւորներ ուղարկեց, **բերել տուեց նրան եւ մտաւ նրա ծոցը:** Նա դաշտանից նոր էր մաքրուել: Կինը վերադարձաւ իր տունը եւ յղիացաւ:..... Նամակում գրուած էր. «Ուրիային ուղարկի՛ր պատերազմի թէժ տեղերը, իսկ դուք յե՛տ քաշուեցէք նրանից, որ նա վիրաւորուի ու մեռնի»:......

.....«Երբ սուգն անցաւ, Դաւիթը մարդ ուղարկեց, նրան իր տունը բերեց, սա դարձաւ նրա կինը եւ նրա համար որդի ծնեց: Դաւթի այս արածը չար բան երեւաց Տիրոջ աչքին:»



## ԱՍՏՎԱԾ ՊԱՏԺՈՒՄ Է ԴԱՎԻԹԻՆ

(Թագավորություններ Բ 12-10-11) «Արդ, սուրը յաւիտեանս թող չհեռանայ քո տնից փոխարէնն այն բանի, որ ինձ անարգեցիր եւ քետացի Ուրիայի կնոջը քեզ կնութեան առար։

«Այսպէս է ասում Տէրը. «Ահա ես քո դէմ չարիք կը յարուցեմ քո տնից. աչքերիդ առաջ քո կանանց[1] պիտի վերցնեմ եւ տամ քո ընկերոջը, նա այս արեգակի լոյսի տակ պառկելու է քո կանանց հետ։»

## ԴԱՎԻԹԻ ՈՐԴԻՆ ԻՐ ՔՐՈՋ ՀԵՏ

(ԹագավորություններԲ 13:1-14) «Դաւթի որդի Աբեսաղոմը ունէր շատ գեղեցիկ մի քոյր, որի անունն էր Թամար։ Դաւթի որդի Ամնոնը սիրեց նրան։» Ամնոնը նեղւում էր այն աստիճան, որ հիւանդացաւ իր քոյր Թամարի պատճառով։ Թամարը կոյս էր, եւ Ամնոնի համար դժուար էր նրան մերձենալու որեւէ փորձ անել։

Ամնոնն ունէր Յովնադաբ անունով մի ընկեր, որը Դաւթի եղբայր Սամայի որդին էր։ Յովնադաբը շատ խորագէտ մարդ էր։

---

[1] ՆԱ պատժեց Դավիթին իր դստեր և որդու, այլ ոչ թե իր կնոջ միջոցով:

Սա ասաց Ամնոնին. «Ինչո՞ւ ես դու այդպէս օրէցօր հիւծւում, ո՛վ արքայորդի, եւ ինձ չես պատմում»: Ամնոնը նրան ասաց. «Իմ եղբայր Աբեսաղոմի քրոջը՝ Թամարին եմ սիրում»:.....

Յովնադաբն ասաց նրան. «Պառկի՛ր քո անկողնում, հիւա՛նդ ձեւացիր, ու երբ հայրդ գայ քեզ տեսնելու, կ՚ասես նրան. «Թող իմ քոյր Թամարը գայ, իմ աչքերի առաջ ուտելիք պատրաստի, ինձ խաւիծ տայ, որպէսզի տեսնեմ եւ ուտեմ նրա ձեռքից»: Ամնոնը պառկեց ու հիւանդ ձեւացաւ:
Արքան եկաւ նրան տեսնելու: Ամնոնն ասաց արքային. «Թող իմ քոյր Թամարը գայ ինձ մօտ, իմ աչքի առաջ ուտելու համար բլիթներ պատրաստի, որ ես ուտեմ նրա ձեռքից»:

Դաւիթը մարդ ուղարկեց տուն, Թամարի մօտ՝ ասելով. «Գնա՛ քո եղբայր Ամնոնի տունը եւ նրա համար կերակո՛ւր պատրաստիր»:.......

Նա բռնելով նրան՝ ասաց. «Եկ պառկի՛ր ինձ հետ, քո՛յր իմ»: Թամարն ասաց նրան. «Ո՛չ, եղբա՛յր, ինձ մի՛ բռնացիր, քանզի Իսրայէլում այդպիսի բան չի արւում:.........

Ամնոնը չուզեց լսել նրան ու ձեռքը զցելով բռնութիւն գործադրեց եւ պառկելով նրա հետ՝ բռնաբարեց նրան:»

## ԱՆԲԱՐՈՅԱԿԱՆ ԲԵՐԵՔ ՁԵԶ ՀԱՄԱՐ

(Օսէէ 1:2) «Օսէէին տրուած Տիրոջ խօսքի սկիզբը: Տէրը ասաց Օսէէին. «**Դու գնա՛ եւ քեզ համար մի պոռնիկ կին ա՛ռ** եւ պոռնկութեան որդիներ, որովհետեւ երկիրը չափից դուրս պիտի պոռնկանայ Տիրոջ դէմ»:

(Ծննդոց 35:22) «Երբ Իսրայէլը բնակուեց այդ երկրում, Ռուբէնը գնաց ու պառկեց իր հօր հարճի՝ Բալլայի հետ: Իսրայէլն իմացաւ, եւ այդ բանը վատ թուաց նրան: Յակոբն ունէր տասներկու որդի:»

(Ծննդոց 49: 4) «Ջրի նման մի՛ եռա, քանզի մտել ես մահիճը քո հօրու պղծել այնժամ մահիճը նրա:»

## ԿՌԱՊԱՇՏ ՄԱՐԳԱՐԵՆԵՐԸ

(Թագավորություններ Գ 11:3) «Նա եօթը հարիւր կին եւ երեք հարիւր հարճ ունէր, եւ կանայք խոտորեցրին նրա սիրտը:»

## ՀԱՐՈՒՆԸ ՊԱՏՐԱՍՏԵՑ ՀՈՐԹ

(Ելք 32:2) «Ահարոնն ասաց նրանց. «Ձեր կանանց, ձեր տղաների ու աղջիկների ականջներից հանեցէ՛ք ոսկէ գինդերը եւ բերէ՛ք ինձ»: Բոլորը իրենց ականջներից հանեցին ոսկէ գինդերը եւ բերեցին տուեցին Ահարոնին: Ահարոնը դրանք առնելով նրանցից՝ կաղապարի մէջ ձուլեց եւ կերտեց ձուլածոյ մի հորթ: Նրանք ասացին.

«Սա՛ է քո աստուածը, Իսրայէ՛լ, որ քեզ դուրս բերեց Եգիպտացիների երկրից»:

## ՍԵՌԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԱՍՏՎԱԾԱՇՆՉԻ ՄԵՋ

(Առակներ 7:7-22) «նա նայում է անմիտ պատանիներին եւ թեթեւամիտ երիտասարդներին, որոնք գնում են փողոցներով, անցնում նրա տան անկեան մօտով.

նա խօսում է երեկոյի խաւարի միջից, երբ գիշերը մթնում, եւ դադարում է անցուդարձը: Այդ կինը, պոռնիկի կերպարանքով, ընդառաջ է գալիս երիտասարդներին, որ բուռն հրայրքով ու պագշոտութեամբ խելքահան անի նրանց: Նրա ոտքերը տանը դադար չեն առնում, եւ նա մերթ թափառում է դուրսը, մերթ անցնում է փողոց ու հրապարակ եւ դարանամուտ է լինում ամէն պատահած անկիւնում:

Ահա **նա որսում է մէկին, գրկում եւ համբուրում նրան** եւ լրբենի երեսով ասում է նրան անկողինս պատրաստել եմ ու քրքում ցանել վրան,բնակարանս խնկել եմ կինամոնով,...... **ե՛կ մինչեւ առաւօտ սէր վայելենք եւ հեշտանքի յանձնուենք.**
**իմ ամուսինը տանը չէ, հեռու ճանապարհ է գնացել,** իր փողի քսակն էլ վերցրել է հետը եւ շատ օրեր անց, թերեւս, տուն գայ»:

Եւ այսպիսի բազում խօսքերով մոլորեցնում է նրան,խեղդող շուրթերով կաշկանդում նրան,

եւ նա յիմարացած գնում է կնոջ յետեւից, ինչպէս արջառը՝ սպանդանոց, կամ շունը՝ թոկը վզին:»

## ԿԱՆԱՑԻ ՍՏԻՆՔՆԵՐԸ ԱՍՏՎԱԾԱՇՆՉԻ ՄԵՋ

(Երգ երգոց 1:13) «Իմ նարդոսը իր հոտը բուրեց. ստաշխի փունջ է իմ սիրեցեալն ինձ համար,որ պիտի հանգստանայ **իմ ստինքների միջեւ**[1]:»

(Երգ երգոց 3: 1-5) «Գիշերն անկողնուս մէջ փնտռեցի իմ հոգու սիրածին, փնտռեցի նրան, բայց չգտայ, կանչեցի, բայց ինձ ձայն չտուեց:» .....

«Երբ նրանցից փոքր-ինչ անցայ, ես գտայ իմ հոգու սիրածին: «**Բռնեցի նրան** եւ բաց չթողեցի, մինչեւ որ նրան իմ մօր տունը չտարայ եւ այն **սենեակը, ուր իմ մայրն յղիացել է ինձնով**»:

«Երդուեցէ՛ք, ո՜վ Երուսաղէմի դուստրեր, հողի եւ հանդի զօրութեան վրայ, որ երբ վեր կենաք, դուք իմ սիրածին չէք արթնացնի, մինչեւ որ ինքը չկամենայ:»

## ՍՈՂՈՄՈՆԻ ՍԱՂՄՈՍՆԵՐԸ և ՍԻՐԱԽԱՂԵՐԻ ԳԻՐՔԸ

---

[1] Մեր մահիճը

(Երգ երգոց 4:1-17) «Թող ինձ համբուրի իր բերանի համբոյրներով։
**Քո ստինքներն** աւելի լաւ են գինուց, եւ քո օծման իւղերի հոտը՝ բոլոր խնկերից։ Քո անունը թափուած իւղ է անուշ. սրա համար էլ օրիորդները սիրեցին քեզ,

եւ դէպի իրենց ձգեցին քեզ։ Մենք կը գանք քո օծման իւղերի հոտի յետեւից»: «Արքան ինձ իր սենեակը տարաւ»: «Մենք պիտի ցնծանք եւ ուրախ լինենք քեզնով,եւ պիտի սիրենք քո ստինքները գինուց աւելի»: «Արժանին սիրեց քեզ»:
«Ես սեւ եմ եւ գեղեցիկ, ո՜վ Երուսաղէմի դուստրեր, Կեդարի վրանների պէս եւ Սողոմոնի խորանի նման:Մի՛ նայէք ինձ, որ թխացել եմ ու սեւացել, քանզի խէթ նայեց արեգակն ինձ։ Իմ մօր որդիները կռուեցին ինձ հետ, ինձ այգեստանի պահապան դրին, բայց ես իմ այգին չպահպանեցի»:
«Պատմի՛ր ինձ, իմ հոգո՛ւ սիրած, ո՞ւր ես քո հօտը հովուում,
ո՞ւր ես հանգստի տանում միջօրէին, որ չմոլորուեմ քո ընկերների երամակների մէջ»:

«Եթէ չգիտես, ո՜վ գեղեցիկդ կանանց մէջ, թէ որտեղ կը գտնես ինձ, գնա՛ հօտերի ոտնահետքերովեւ քո ուլերն արածեցրո՛ւ հովիւների վրանների մօտ։
Ո՛վ իմ սիրելի, ես քեզ նմանեցրի փարաւոնի կառքին լծուած իմ երիվարներին»: Գեղեցիկ են քո ծնօտները

տատրակի ծնօտների նման[1],եւ գեղեցիկ է քո պարանոցը,ասես մանեակներով զարդարուած լինի: Մենք քեզ կը զուգենք ոսկէ զարդի պէս,որ ընդելուզուած է արծաթէ կիտուածքներով, մինչեւ որ արքան քեզ իր գիրկն առնի»:

«Իմ նարդոսը իր հոտը բուրեց. ստաշխի փունջ է իմ սիրեցեալն ինձ համար,որ պիտի հանգստանայ **իմ ստինքների միջեւ:**
Նոճու ողկոյզ է իմ սիրեցեալն ինձ համար՝Ենգադդի այգիների մէջ»:
«Ահաւասիկ, ի՜նչ գեղեցիկ ես, ո՛վ իմ սիրելի, ի՜նչ գեղեցիկ ես. քո աչքերը նման են աղաւնիների»: «Ի՜նչ բարետես ես, ահա, ո՛վ իմ սիրեցեալ, եւ որքա՜ն գեղեցիկ ես գահաւորակի վրայ՝[2] հովանու ներքոյ: Մեր տան գերանները մայրիներ են, եւ նոճիներ են մեր առաստաղները»:

(Երգ երգեց 8:8-9) «Մեր քոյրը փոքրիկ է եւ դեռ չունի ստինքներ. ի՞նչ պիտի անենք այն օրը, երբ գան նրան ուզելու:

Եթէ պարիսպ լինէր նա,վրան **արծաթէ աշտարակներ կը կանգնեցնէինք**, եթէ դուռ լինէր նա, եղեւնափայտի տախտակներ կը շինէինք վրան»:

---

[1] Վերանայված Ստանդարտ Տարբերակ. «ուղղակի»

[2] Վերանայված Ստանդարտ Տարբերակ. «անուղղակի»

## ԶՎԱՐՃԱՑԻՐ ՆՐԱՆՑ ՀԵՏ

(Առակներ 5:18) «Քո ջրի աղբիւրը թող առանձին լինի, եւ ուրա՛խ **եղիր քո երիտասարդ օրերի կնոջ հետ:**»

## ՍԵՌԱԿԱՆ ԼԵԶՈՒՆ ԵԶԵԿԻԵԼԻ ՄԵՋ

(Եզեկիել 16:1-2) «Տէրը խօսեց ինձ հետ ու ասաց. «Մարդո՛ւ որդի, իրազե՛կ դարձրու Երուսաղէմին իր անօրէնութիւնների մասին եւ ասա՛.....

(Եզեկիել 16:15) «Եւ դու քո գեղեցկութեամբ պանծալի եղար, շնացար քո հոմանիների հետ ու **պոռնկութիւնդ տարածեցիր բոլոր անցորդների վրայ**, որոնց հետ առաջ այդպիսի բաներ չէին պատահել:»

(Եզեկիել 16:26) « Պոռնկացար նաեւ քեզ սահմանակից Եգիպտոսի մեծ առնանդամ ունեցող զաւակների հետ, պոռնկացար բազմապատիկ, որպէսզի ինձ զայրացնես »

(Եզեկիել 16:33) « Բոլոր պոռնիկները վարձ են առնում իրենց համար, մինչդեռ դու ինքդ էիր վարձ տալիս տարփածուներիդ եւ նուէրներով հրապուրում էիր նրանց, որ գային քեզ մօտ բոլոր կողմերից՝ քեզ հետ շնանալու:»

(Եզեկիել 16:36-37) «Այսպէս է ասում Ամենակալ Տէրը. այն բանի համար, որ այլասերութեամբ թափեցիր քո դրամները, ու հոմանիներիդ առաջ բացայայտուեցին պոռնկութեանդ ամօթանքը, բոլոր պիղծ

մտադրութիւններդ, ինչպէս նաեւ զաւակներիդ արեան համար, որ հոմանիներիդ էիր տալիս նրանց, - ահա սրանց համար ես քո դէմ եմ հաւաքելու բոլոր հոմանիներիդ, որոնց հետ խառնակուել ես, քո դէմ եմ հանելու քո բոլոր սիրելիներին ու ատելիներին, հաւաքելու եմ նրանց եւ շրջապատել եմ տալու քեզ, յայտնելու եմ նրանց առաջ քո բոլոր չարագործութիւնները, ու նրանք տեսնելու են քո բոլոր խայտառակութիւնները»

(Եզեկիել 16:39) «Այսպէս է ասում Ամենակալ Տէրը. այն բանի համար, որ այլասերութեամբ թափեցիր քո դրամները, ու հոմանիներիդ առաջ բացայայտուեցին պոռնկութեանդ ամօթանքը, բոլոր պիղծ մտադրութիւններդ, ինչպէս նաեւ զաւակներիդ արեան համար, որ հոմանիներիդ էիր տալիս նրանց, - ահա սրանց համար ես քո դէմ եմ հաւաքելու բոլոր հոմանիներիդ, որոնց հետ խառնակուել ես, քո դէմ եմ հանելու քո բոլոր սիրելիներին ու ատելիներին, հաւաքելու եմ նրանց եւ շրջապատել եմ տալու քեզ, յայտնելու եմ նրանց առաջ քո բոլոր չարագործութիւնները, ու նրանք տեսնելու են քո բոլոր խայտառակութիւնները»

## ԵՐԿՈՒ ԱՆԲԱՐՈՅԱԿԱՆՆԵՐԻ, ՈՂՂԱՅԻ և ՈՂԻԲԱՅԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ

(Եզեկիել 23:2-4) «Տէրը խօսեց ինձ հետ ու ասաց. «Մարդո՛ւ որդի, երկու կանայք կային՝ մի մօր

դուստրեր.
«իրենց երիտասարդ հասակում պոռնկացան Եգիպտոսում: Այնտեղ ճմռթուեցին նրանց ստինքները, այնտեղ նրանք զրկուեցին իրենց կուսութիւնից:» «Աւագ դստեր անունը Ողղա էր, քրոջ անունը՝ Ողղիբա: Նրանք իմը եղան եւ տղաներ ու աղջիկներ ծնեցին. սրանց անուններն էին, Շամրինինը՝ Ողղա, Երուսաղէմինը՝ Ողղիբա:»

(Եզեկիել 23:11-22) «Այս բանը տեսաւ նրա քոյր Ողղիբան, իր ապականուած ցանկասիրութեան մէջ աւելի առաջ գնաց, քան քոյրը, նաեւ պոռնկութեան մէջ աւելի առաջ, քան քոյրը:

Գնաց ասորեստանցի իշխանների ու զօրավարների յետեւից, որոնք նրա մօտ էին. դրանք ազնիւ ծիրանիներ հագածներ, երիվարներ հեծած սպառազէններ, ամէն ինչով ընտրեալ երիտասարդներ էին: Տեսայ, որ պղծութիւն էին անում. երկուսի էլ ճանապարհը նոյնն էր:

Սա խրուեց իր պոռնկութեան մէջ: Երբ պատերին քաղդէացի տղամարդկանց պատկերներ էր տեսնում՝ նկարուած քերիչներով, մէջքներին տեսակ-տեսակ զօտիներ, գլուխներին՝ ներկուած խոյրեր (խայտաբղէտ գոյներ էին ցոլանում բոլորից էլ, ինչպէս լինում են Բաբելոնի զաւակները քաղդէացիների երկրում, իրենց երկրում), - աչք էր դնում նրանց վրայ՝ իր աչքերի հայեացքով,

սուրհանդակներ ուղարկում քաղդէացիների երկիրը, նրանց մօտ։

Նրա մօտ եկան Բաբելոնի զաւակները նրա անկողնում հանգչելու, պղծեցին նրան իր պոռնկութեան մէջ։ Նա խառնակուեց նրանց հետ. մարմինը յագեցաւ նրանցից Բացայայտեց իր պոռնկութիւնը եւ պատմեց իր ամօթը։ Եւ ես հեռացայ նրանից, ինչպէս հեռացել էի նրա քրոջից։

Բայց դու սաստկացրիր պոռնկութիւնդ, որ յիշեցնում էր երիտասարդութեանդ օրերը, երբ պոռնկութիւն էիր անում Եգիպտոսում։
Աչքդ գցեցիր էշերի ու ձիերի անդամներ ունեցող քաղդէացիների վրայ։
Պատժելու եմ քեզ այն անիրաւութիւնների համար, որոնք գործեցիր երիտասարդութեանդ օրերին քո օթեւանում, Եգիպտացիների երկրում, ուր ճմռթուեցին ստինքներդ, ու խախտուեց կուսութիւնդ»:
«Ուստի, ո՛վ Ողիբա, այսպէս է ասում Տէր Աստուածը. «Ահա քեզ վրայ ոտքի եմ հանելու հոմանիներիդ, որոնցից յագեցաւ ու զզուեց մարմինդ»

(Եզեկիել 23:32-33) «Քրոջդ բաժակն ես ըմպելու, մի խոր ու լայն բաժակ։ Ծաղր ու ծանակ ես դառնալու, կատարելապէս հարբելու ես:

«Բոլորովին թուլանալու ես: Ըմպելու ես քո պոռնկութեան, Շամրին քրոջ բաժակը եւ քամելու ես ցմրուր:»

## ԱՍՏՎԱԾ ՄԱՐԴԿԱՆՑ ԴՐԴՈՒՄ Է ԱՆԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹՅԱՆ

(Ամոս 7:16-17) «Արդ, լսի՛ր Տիրոջ պատգամները. դու ասում ես՝ «Մի՛ մարգարէացիր Իսրայէլի մասին, մարդ մի՛ հաւաքիր ու մի՛ խօսիր Յակոբի տան դէմ»:

«Դրա համար այսպէս է ասում Տէր Աստուածը. «Քո կինը այդ քաղաքում պիտի պոռնկանայ, եւ քո որդիներն ու դուստրերը սրով պիտի ընկնեն, քո երկիրը լարերով պիտի բաժանուի, ինքդ պիտի վախճանուես պիղծ երկրում, եւ Իսրայէլը գերուելով պիտի գերուի իր երկրից»:

(Երեմիա 8:9-10) «իմաստուններն ամօթահար եղան, զարհուրեցին ու պարտուեցին, որովհետեւ անարգեցին Տիրոջ խօսքը: Նրանց մէջ ի՞նչ իմաստութիւն կայ որ:»

«Դրա համար էլ նրանց կանանց ուրիշներին պիտի տամ, իսկ նրանց ագարակները՝ օտար ժառանգներին, որովհետեւ նրանցից ամէն ոք, փոքրից մինչեւ մեծերը, չափից աւելի ագահութիւն է անում, իւրաքանչիւրը, մարգարէից մինչեւ քահանան՝ անիրաւութիւն:»

(Եսայի 3:16-17) «Այսպէս է ասում Տէրը. «Սիոնի դուստրերը հպարտացան, քայլում էին

բարձրապարանոց, աչքով-ունքով էին անում, շարժուելիս իրենց քղանցքներն էին քարշ տալիս ու ոտքերով կաքաւում»:

«Դրա համար էլ Աստուած պիտի խոնարհեցնի Սիոնի իշխանուհիի դուստրերին, այն օրը Տէրը պսակազերծ պիտի անի նրանց։»

(Երեմիա13:22) «Եւ եթէ քո սրտում ասես՝ «Ինչո՞ւ պատահեց այս բանը ինձ հետ»,ապա դա եղաւ քո բազում անիրաւութիւնների պատճառով, քանի որ **քո քղանցքները բացուեցին** քո յետեւից՝խայտառակելով քեզ»

(Երեմիա 13:26) «Ես պիտի մերկացնեմ քո յետեւը՝ փեշդ քաշելով քո գլխին ու երեսին,որ երեւան քո ամօթոյքը։»

(Նահում 3:4-5) «Գեղապանծ պոռնիկ, կախարդների գլխաւոր, որ վաճառում էր ազգը իր պոռնկութեամբ եւ տոհմերը՝ իր կախարդանքներով:»

«Ահա ես քեզ դէմ եմ, - ասում է Ամենակալ Տէր Աստուածը, - պիտի բացեմ քո յետնամասը, քող պիտի գցեմ քո դէմքին, **ազգերին ցոյց պիտի տամ քո ամօթը** եւ թագաւորութիւններին՝ քո անարգանքը:»

(Օսէէ 2:2-5) «Դա՛տ արէք ձեր մօր հետ, դա՛տ արէք, քանի որ նա իմ կինը չէ, եւ ես նրա ամուսինը չեմ։Ես կը վերացնեմ նրա պոռնկութիւնը իմ ներկայութիւնիցեւ շնութիւնը՝ իր ստինքների միջից,»

«որովհետեւ նրան կը մերկացնեմեւ նրան կ՛անեմ այնպէս, ինչպէս ծնուած օրը.նրան անբնակ կը դարձնեմ,կը վերածեմ անջուր հողի «եւ կը սպանեմ նրան ծարաւից:»

«Նրա որդիներին չեմ գթայ, քանի որ պոռնկութեան որդիներ են:»

## ԱՍՏՎԱԾԱՇՆՉՅԱՆ ԼԵԶՈՒՆ

## ԵԶԵԿԻԵԼԻՆ ՈՒՂՂՎԱԾ ՆՈՂԿԱԼԻ ՀՐԱՄԱՆԸ

(Եզեկիել 4:12-13) «Կերակուրդ գարուց պատրաստուած նկանակի ձեւով կ՛ուտես. **մարդկանց կղկղանքի վրայ կ՛եփես** այն, նրանց աչքի առաջ:»

«Ու կ՛ասես. «Այսպէս է ասում Իսրայէլի Տէր Աստուածը. իսրայէլացիներն այսպէս են ուտելու իրենց հացը՝ իրենց պղծութեամբ, այն այլազգիների մէջ, ուր ցրելու եմ նրանց»:

(Եզեկիել 4:14-15) «Եւ ես ասում եմ. «Քա՛ւ լիցի, Իսրայէլի Տէ՛ր Աստուած, եթէ հոգիս երբեւէ ապականուի պղծութիւնների մէջ. ես մեռելոտի կամ գազանից յօշոտուած անասունի միս ծննդիցս ի վեր մինչեւ այժմ երբեք չեմ կերել, ու բերանս էլ որեւէ պիղծ միս չի մտել»:

«Եւ ասաց ինձ. «Ահա քեզ **մարդու կղկղանքի փոխարէն արջառի քակոր եմ տուել**. դրա վրայ կ՛եփես հացդ»:

## ՆՐԱՆՔ ՈՒՏՈՒՄ ԵՆ ԿԵՂՏ և ԸՄՊՈՒՄ ԵՆ ՄԵԶ

(Թագավորություններ Դ 18:27) «Բայց Ռափսակը նրանց ասաց. «Միթէ իմ տէրն այս խօսքերը քո տիրո՞ջ ու քե՞զ ասելու համար ուղարկեց ինձ. չէ՞ որ պարսպի վրայ կանգնած մարդկանց համար, որպէսզի ձեզ հետ ուտեն իրենց կեղտը եւ խմեն իրենց մէզը»:

## «ԱՊՕՐԻՆԱԾԻՆ» ԲԱՌԸ ԱՍՏՎԱԾԱՇՆՉԻ ՄԵՋ

(Երկրորդ Օրենք 23:2) «Պոռնկորդին իրաւունք չունի Տիրոջ ժողովարանը մտնելու:»

(Եբրայեցիներին 12:8) «Ապա դուք **ապօրինածին** եք, այլ ոչ թե որդիներ:»

(Եբրայեցիներ 12:8) «Այդ նշանակում է, որ դու իրական որդիներ չեք, այլ **ապօրինածիներ:»** **Այս Արքա Ջեյմսի տարբերակի մեջ է, որը գոյություն չունի հայերեն թարջմանված աստվածաշնչի մեջ:**

## ԻՆՉՊԵՍ ՓՐԿԵԼ ՆՐԱ ԱՄՈՒՍՆՈՒՆ

(Երկրորդ Օրենք 25:11-12) «Եթէ երկու մարդ՝ երկու ազգակից իսրայէլացի եղբայրներ կռուեն միմեանց հետ, եւ նրանցից մէկի կինը իր ամուսնուն ազատելու նպատակով մօտենայ իր ամուսնու հետ կռուողին եւ ձեռքը մեկնելով՝ բռնի նրա ամորձիքներից,

«ապա առանց խղճալու պէտք է կտրես նրա ձեռքը:»

## ԱՐՏԱՀԱՅՏՄԱՆ ԱՍՏՎԱԾԱՇՆՉՅԱՆ ՈՃԸ

(Ժողովող 3:1-7) «Ամէն բանի ժամանակը կայ, եւ աշխարհում ամէն գործ ունի իր ժամանակը. ծնուելու ժամանակը եւ մեռնելու ժամանակը, տնկելու ժամանակը եւ տնկածը հանելու ժամանակը, սպանելու ժամանակը եւ բժշկելու ժամանակը, քանդելու ժամանակը եւ շինելու ժամանակը, լալու ժամանակը եւ ծիծաղելու ժամանակը, ողբալու ժամանակը եւ պարելու ժամանակը, քարեր կտրելու ժամանակը եւ քարերը հաւաքելու ժամանակը, գրկելու ժամանակը եւ գրկից հեռանալու ժամանակը, փնտռելու ժամանակը եւ կորցնելու ժամանակը, պահելու ժամանակը եւ դուրս նետելու ժամանակը, «պատռելու ժամանակը եւ կարկատելու ժամանակը, լռելու ժամանակը եւ խօսելու ժամանակը,»

(Ժողովող7:2-4) «Բարի անունը լաւ է հոտաւէտ իւղից, եւ մահուան օրը` ծննդեան օրից: Խնջոյքի տուն գնալուց լաւ է սգոյ տուն գնալը, որովհետեւ դա է ամէն մարդու վախճանը, եւ դա կենդանի մարդու սրտին բարութիւն է տալիս: Տխրութիւնը լաւ է ծիծաղից, որովհետեւ դէմքի վշտալի տեսքից զուարթանում է սիրտը:»

(Յոբ 35:10-11) «Սակայն մէկը չի ասել. « Ո՞ւր է Աստուած, որ այս ամէնն ստեղծել է, որ կարգում է գիշերային պահակութեան ժամերը, « որ ինձ զատում է երկրի չորքոտանիներից ու երկնքի թռչուններից:»

(Թագավորություններ Ա 2:1) « Աննան աղօթել սկսեց ու ասաց. «Միրտս ամրացաւ իմ Տիրոջ շնորհիւ, գլուխս բարձր եմ պահում Տիրոջ շնորհիւ, բերանս լայն բացուեց իմ թշնամիների դէմ, ուրախ եղայ, որ փրկեցիր ինձ:»

## ԿԱՆԱՅՔ ԱՍՏՎԱԾԱՇՆՉԻ ՄԵՋ

## ԴԱՇՏԱՆԸ ԱՍՏՎԱԾԱՇՆՉԻ ՄԵՋ

(Ղևտական 15:19-29) «Այն կինը, որից արիւն է հոսում, եւ այդ արեան հոսումն իր մարմնից է, նա եօթն օր կը լինի իր դաշտանի մէջ: Ով **որ դիպչի նրան, անմաքուր է համարւում** մինչեւ երեկոյ: Ինչի վրայ որ պառկի այդ կինն իր դաշտանի ընթացքում, եւ ինչի վրայ էլ նստի նա, **անմաքուր է համարւում**: Ով որ դիպչի նրա անկողնին, պէտք է լուանայ իր զգեստները, իր մարմինը լուայ ջրով: Նա անմաքուր է համարւում մինչեւ երեկոյ: Ով որ դիպչի մի առարկայի, **որի վրայ այդ կինը նստել է, պէտք է լուանայ իր զգեստները, լուացուի ջրով**: Նա անմաքուր է համարւում մինչեւ երեկոյ: Եթէ որեւէ մէկը դիպչի այն անկողնին, որի վրայ պառկել է այդ կինը, կամ այն առարկային, որի վրայ նստել է նա, **անմաքուր է համարւում մինչեւ երեկոյ**: Եթէ որեւէ մէկը պառկի նրա հետ, երբ նրա անմաքրութիւնը դեռ իր մէջ է, եօթը օր թող անմաքուր համարուի: Մինչեւ երեկոյ թող **անմաքուր համարուի** նաեւ այն անկողինը, որի վրայ այդ մարդը կը քնի: Եթէ մի կնոջ դաշտանն անկանոն է, եւ արիւնը սահմանուած ժամանակից աւելի երկար է հոսում, նրա այդ բոլոր օրերը թող համարուեն որպէս

**դաշտանի օրեր**: Այդ բոլոր օրերի ընթացքում նա թող **անմաքուր համարուի**: « Այն անկողինը, որի մէջ նա կը պառկի իր արիւնահոսութեան օրերին, կանոնաւոր դաշտանի օրերում իր պառկած անկողնի նման **անմաքուր թող համարուի**: Ամէն առարկայ, որի վրայ նա կը նստի այս շրջանում, թող **անմաքուր համարուի,** ինչպէս որ **անմաքուր էր համարւում** իր կանոնաւոր դաշտանի օրերին: **Ով որ դիպչի նրան, թող անմաքուր համարուի**: Նա պէտք է լուանայ իր զգեստները եւ իր մարմինը լուայ ջրով: Նա **անմաքուր է համարւում մինչեւ երեկոյ**: Երբ դադարի կնոջ արիւնահոսութիւնը, նա պէտք է հաշուի եօթը օր, ապա մաքուր կը համարուի: «Ութերորդ օրը պէտք է առնի երկու տատրակ կամ աղաւնու երկու ձագ, բերի քահանայի մօտ, վկայութեան խորանի դուռը:»

## ԾՆՆԴԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՑԱՎԵՐԻ ՊԱՏՃԱՌԸ

(Ծննդոց 3:16) «Իսկ կնոջն ասաց. «Պիտի անչափ բազմացնեմ քո ցաւերն ու քո հառաչանքները: Ցաւերով երեխաներ պիտի ծնես, քո ամուսնուն պիտի ենթարկուես, եւ նա պիտի իշխի քեզ վրայ»:»

## ՀԵՏԾՆՆԴԱԲԵՐԱԿԱՆ ՇՐՋԱՆԸ ԱՍՏՎԱԾԱՇՆՉԻ ՄԵՋ

(Ղևտական 12:2 և 5) «Խօսի՛ր Իսրայէլի որդիների հետ եւ ասա՛ նրանց. «Եթէ որեւէ կին յղիանայ եւ արու զաւակ ծնի, թող նա անմաքուր համարուի եօթը օր,

այսինքն՝ այնքան, ինչքան իր դաշտանի շրջանի համար է անմաքուր համարւում։
«Իսկ եթէ նա աղջիկ զաւակ ունենայ, թող եօթը օր անմաքուր համարուի, այսինքն՝ այնքան, ինչքան իր դաշտանի շրջանի համար է անմաքուր համարւում։ Դրանից յետոյ վաթսունվեց օր էլ նա պէտք է սպասի, որպէսզի մաքրուի իր արիւնը։»

## ՍԵՌԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԻՑ ՀԵՏՈ

(Ղևտական 15:16-17) «Եթէ որեւէ տղամարդ սերմնահոսութիւն ունենայ, նա իր ամբողջ մարմինը պէտք է լուայ ջրով։ Նա անմաքուր է համարւում մինչեւ երեկոյ։»

« Ամէն հագուստ կամ մորթեղէն, որին կը դիպչի տղամարդու սերմը, պէտք է լուացուի ջրով։ Դա անմաքուր է համարւում մինչեւ երեկոյ։»

(Ղևտական22:17) «**Երբ արևը մայր մտնի, նա կմաքրվի**»

(Ղևտական15:18) «Երբ մի կին ընդունի տղամարդու սերմը, երկուսն էլ պէտք է լուացուեն ջրով։ Նրանք անմաքուր են համարւում մինչեւ երեկոյ։»

## ԿԱՆԱՆՑ ՔՈՂԸ ԱՍՏՎԱԾԱՇՆՉԻ ՄԵՋ

(Կորնթացիներ Ա 11:5-6) «Եւ ամէն կին, երբ աղօթքի կանգնի կամ մարգարէանայ գլխաբաց, անպատւում է

իր գլուխը. որովհետեւ այնպէս է համարւում, թէ իբր գլուխնածիլուած լինի.

«քանզի, եթէ կինը քողով չի ծածկւում, թող կտրի իր մազերը: Իսկ եթէ ամօթ է կնոջ համար մազը կտրել կամ ածիլել, թող քողով ծածկուի:

**Դատեք ինքներդ,** արդյո՞ք պատշաճ է կնոջը Աստծոն աղոթել իր բաց գլխով[1]:»

## ԿԻՆԸ ԱՍՏԾՈ ՓԱՌՔԸ ՉԷ

(Կորնթացիներ Ա 11:7-9) «Պէտք չէ, որ տղամարդը իր գլուխը ծածկի, որովհետեւ նա պատկերն ու փառքն է Աստծու. իսկ կինը իʹր մարդու փառքն է. որովհետեւ ոչ թէ մարդն է կնոջից, այլ կինը՝ մարդուց. քանզի մարդը չստեղծուեց կնոջ համար, այլ կինը՝ մարդու համար:»

## ՆԱ, ԿԻՆԸ, ՉԱՐԻՔ Է

---

[1] Թվում է, որ Քրիստոնյաները անտեղյակ են Աստվածաշնչի մեջ գոյություն ունեցող քողի մասին, որը ինձ ստիպեց գրառել նրանց տարբերակները և նրանք, ովքեր պախարակում են Իսլմում գոյություն ունեցող քողը, պետք է դիտեն իրենց իսկ Աստվածաշնչի տարբերակները և հաշվի առնեն նաև «Մի դատիր, որ չդատվես:Քանի որ Դատով դու հայտարարում ես, որ դու կդատվես և չափանիշները, որը դու տալիս է, կլինի քոնը:

(Զաքարիա 5:7-8) «Եւ ահա մի կապարէ կշեռք բարձրացաւ. մի կին նստած էր նրա մի թաթի մէջ: Հրեշտակն ասաց. «Դա է անիրաւութիւնը»: Եւ նրան գցեց կշեռքի մէջ ու կապարէ քարը դրեց նրա բերանին:»

## ՔՈՂԱՐԿԵՔ ԿՆՈՋ ՁԱՅՆԸ

(ԿորնթացիներԱ14:34-35) «Ինչպէս որ է Աստծու բոլոր եկեղեցիներում, կանայք թող լուռ մնան եկեղեցու մէջ, որովհետեւ թոյլատրուած չէ նրանց խօսել, այլ՝ հնազանդ լինել, ինչպէս օրէնքն էլ ասում է: Իսկ եթէ ուզենան մի բան սովորել, տանը թող իրենց մարդկանց հարցնեն. քանզի կին արարածի համար անպատեհ է խօսել եկեղեցում:»

(Տիմոթեոս 2:9) « Նոյնպէս եւ կանայք, համեստ զարդարանքով, ակնածութեամբ եւ պարկեշտութեամբ թող զարդարուեն. ոչ թէ մարգարտով ընդելուզուած ոսկեայ հիւսքերով կամ պճնազարդ զգեստներով,»

## ՊԱՐՏԱԴՐԱԲԱՐ ԱՄՈՒՍՆՈՒԹՅՈՒՆ

(Երկրորդ Օրենք 25:5) «Եթէ եղբայրներն ապրում են միասին, եւ նրանցից մէկը առանց զաւակ ունենալու մեռնի, ապա մեռած եղբօր կինը օտարի հետ թող չամուսնանայ: Նրա ծոցը թող մտնի իր ամուսնու եղբայրը, սա թող կին առնի նրան ու ապրի այդ կնոջ հետ:»

## Ի՞ՆՉ ԿԼԻՆԻ, ԵԹԵ ՆԱ ՄԵՐԺԻ

(Երկրորդ օրենք 25:7-10) «Իսկ եթէ եղբայրը չցանկանայ ամուսնանալ իր մահացած եղբօր կնոջ հետ, ապա կինը թող դուրս գայ քաղաքի դարպասի մօտ, ծերերի առջեւ եւ ասի. «Իմ ամուսնու եղբայրը չի ուզում Իսրայէլի մէջ պահպանել իր եղբօր անունը:

«Այն ժամանակ իր քաղաքի ծերերը թող կանչեն մահացածի եղբօրը, խօսեն նրա հետ: Եթէ նա կանգնի ու ասի՝ «Չեմ ուզում ամուսնանալ նրա հետ», ապա նրա եղբօր կինը մօտենալով ծերերին՝ նրա ոտքից թող հանի մի կօշիկը, թքի նրա երեսին եւ պատասխան տալով՝ ասի. «Այսպէս են վարւում այն մարդու հետ, որը վառ չի պահում իր եղբօր տունը»:

«Նրա անունն Իսրայէլի մէջ թող կոչուի ՝ **բոբկացած մարդու տուն**՚:»

## ՎԵՐՋԻՆ ՕՐԸ ԿԱՍԿԱԾԻ ՏԱԿ ԱՌՆԵԼ

(Յոբ 14:14) «Մարդը թէ մեռնի՝ կ՚ապրի՞ նա դարձեալ՝ ամբողջացնելով օրերն իր կեանքի: Պիտի սպասեմ, մինչեւ որ կրկին գոյութիւն առնեմ:»

(Ժողովող 11:9) «Ուրախացի՛ր, երիտասա՛րդ, քո երիտասարդութեամբ, թող սիրտդ քեզ զուարճացնի քո երիտասարդ օրերին:Գնա՛ քո սրտի անբիծ ճանապարհով եւ քո աչքերի տենչանքով, բայց եւ

իմացի՛ր, որ այս բոլորի համար Աստուած պիտի քեզ դատաստանի ենթարկի:»[1]

## ՌԱՍՍԱՅԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԱՍՏՎԱԾԱՇՆՉԻ ՄԵՋ

## ԱՅԼԱԶԳԻՆԵՐԸ ԱՍՏՎԱԾԱՇՆՉԻ ՄԵՋ

(Դատավորներ 3:31) «Աւոդից յետոյ մէջտեղ ելաւ Անաթի որդի Սամեգարը, որն արօրի մաճով այլազգիներից վեց հարիւր մարդ կոտորեց, աւար առաւ չափազանց շատ արջառ եւ ոչխար՝ չհաշուած կովերի հորթերը: Եւ նա՛ էլ փրկեց Իսրայէլը:»

(Դատավորներ 15:15) «Նա գետին տապալուած էշի մի ծնօտ գտաւ, երկարեց իր ձեռքը, վերցրեց այն եւ դրանով հազար մարդ սպանեց:»

## 200 ԹԼՊԱՏՆԵՐ, ՈՐՊԵՍ ԴԱՎԻԹԻ ՕԺԻՏ

(Թագավորություններ Ա 18:25-27) «Արքան գլխագին չի ուզում, այլ միայն այլազգիների հարիւր

---

[1] Աստվածաշնչի Հին Կտակարանը չի նուում վերջին օրվա մասին, բացառությամբ մեկ տարբերակի մեջ: Աստված չի վախեցնում թույլերին Դժոխքի կրակով, սակայն, Նա վերցնում է նրանց երկիրը ամեն անգամ, երբ նրանք չեն ենթարկվում Նրան և վերադարձնում է, երբ նրանք մեղանչում են, որպես պարգև և պատիժ միայն աշխարհիկ կյանքում:

անթլփատութիւն, որպէսզի արքայի թշնամիներից վրէժ լուծի»: Սաւուղը մտածում էր Դաւթին այլազգիների ձեռքը յանձնել: «Սաւուղի ծառաներն այս խօսքերը հաղորդեցին Դաւթին, ու Դաւթին հաճելի թուաց արքային փեսայ դառնալը: Պայմանաւորուած ժամկէտը դեռ չէր վերջացել, որ Դաւիթն իր մարդկանցով վեր կացաւ եւ այլազգիներից հարիւր մարդ սպանեց, բերեց նրանց չթլփատուած անդամները, լցրեց արքայի առջեւ եւ արքային փեսայ դարձաւ. Սաւուղն իր դուստր Մեղքողին նրան կնութեան տուեց:»

(Մնացորդաց Ա 11:20) «Յովաբի եղբայր Աբեսսան երեքի գլխաւորն էր: Սա էր, որ միայնակ սուր էր բարձրացրել երեք հարիւր հոգու վրայ եւ նրանց միաժամանակ սպանել:»

## ԸՆՏՐՅԱԼՆԵՐԻ ԱՎԵՏՅԱՑ ԵՐԿԻՐԸ

(Ծննդոց 26:2-3) «Իսահակը գնաց փղշտացիների արքայ Աբիմելէքի մօտ, Գերարա: Նրան երեւաց Տէրն ու ասաց. «Եգիպտոս մի՛ իջիր, այլ բնակուի՛ր այն երկրում, որտեղ ասացի քեզ. իբրեւ պանդուխտ ապրի՛ր այս երկրում, որ ես լինեմ քեզ հետ եւ օրհնեմ քեզ, որովհետեւ քեզ ու քո սերունդներին եմ տալու այս ողջ երկիրը: Ես հաստատ կը պահեմ այն երդումը, որ տուեցի քո հայր Աբրահամին:»

(Ծննդոց 35:9-12) «Աստուած երեւաց Յակոբին, երբ սա Լուզում էր: Երբ Յակոբը Ասորիների Միջագետքից եկաւ

Լուզ, Աստուած օրհնելով նրան՝ «ասաց. «Քո անունը Յակոբ է, բայց այլեւս Յակոբ չես կոչուելու, այլ Իսրայէլ կը լինի քո անունը»: Եւ նա կոչուեց Իսրայէլ: Աստուած ասաց նրան. «Ես եմ քո ամենակարող Աստուածը: Աճի՛ր եւ բազմացի՛ր: Ցեղեր ու ցեղախմբեր պիտի ծնուեն քեզնից, եւ թագաւորներ պիտի ելնեն քո կողից: Այն երկիրը, որ տուել եմ Աբրահամին ու Իսահակին, քեզ եմ տալու, քոնը թող լինի: Քեզնից յետոյ քո սերնդին եմ տալու այդ երկիրը:»

(Ծննդոց 28:13-14) «Տէրը կանգնած էր սանդուղքի վրայ: Նա ասաց. «Ես Տէրն եմ, քո հայր Աբրահամի Աստուածը եւ Իսահակի Աստուածը: Մի՛ վախեցիր, որովհետեւ այն հողը, որի վրայ քնել ես դու, քեզ եմ տալու եւ քո սերունդներին: Քո սերունդները երկրի աւազի չափ շատ են լինելու, **տարածուելու են դէպի ծովակողմ, դէպի արեւելք, դէպի հիւսիս ու հարաւ:** Քո շնորհիւ եւ քո սերունդների շնորհիւ օրհնուելու են աշխարհի բոլոր ազգերը:»

(Ծննդոց13:14-17) «Ղովտի հեռանալուց յետոյ Աստուած Աբրամին ասաց. «Կանգնածդ տեղից քո աչքերով **նայի՛ր դէպի հիւսիս ու հարաւ, դէպի արեւելք ու ծով: Որքան աչքդ կտրում է, այդ ողջ երկիրը յաւիտեան քեզ եմ տալու եւ քո սերունդներին:**[1] Քո յետնորդներին պիտի բազմացնեմ երկրի աւազի չափ. եթէ որեւէ մէկը ի

[1] Երկու որդիներն էլ:

վիճակի լինի հաշուելու երկրի աւազը, ապա քո յետնորդներն էլ թիւ կ՚ունենան: Իսկ արդ, արի **շրջի՛ր այդ երկիրն իր երկարութեամբ ու լայնութեամբ, որովհետեւ այն քեզ եմ տալու**:»

(Երկրորդ օրէնք 32:49) «Բարձրացի՛ր Մովաբի երկրում Երիքովի դիմաց գտնուող Աբարիմ լեռը՝ Նաբաւ լեռը, եւ դիտի՛ր այն երկիրը, որ տալու եմ իսրայէլացիներին իբրեւ սեփականութիւն»

## ՌԱՍՍԱՅԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԱՍՏՎԱԾԱՇՆՉԻՑ

(Թագավորություններ Դ 5:15) «Դրանից յետոյ նա իր ամբողջ բանակով վերադարձաւ Եղիսէէի մօտ ու կանգնելով նրա առջեւ՝ ասաց. «Հիմա համոզուեցի, **որ չկայ Աստուած ամբողջ աշխարհում, այլ միայն՝ Իսրայէլում**: Արդ, ընծա՛յ ընդունիր քո ծառայից:»

(Երկրորդ օրէնք 7:6) «Դու ես քո Տէր Աստծու սուրբ ժողովուրդը, եւ **քո Տէր Աստուածը քե՛զ է ընտրել, որ դու լինես իր սեփական ժողովուրդը, քան թէ երկրի վրայ ապրող մնացած բոլոր ազգերը**:»

(Եսայի 43:4) «Ուստի թանկ եղար ինձ համար, իմ առաջ փառաւորուեցիր, ու ես սիրեցի քեզ. **մարդիկ կը տամ քո փոխարէն, իշխաններ՝ քո գլխի դիմաց**:»

## ՆՈՅՑԸ ՀԻՄՆՈՒՄ Է ՌԱՍՍԱՅԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

(Գաղատացիներ 5:2) «Ահա՛ւասիկ ես՝ Պօղոսը, ձեզ ասում եմ, որ, եթէ թլփատուէք, Քրիստոս ձեզ ոչնչով չի օգնի:»

(Կորնթացիներ Ա 7: 10 և 12 և 25) «Իսկ ամուսնացեալներին ոչ թէ ես, այլ Տէրն է պատուիրում. թող կինը ամուսնուց չբաժանուի:

«Բայց միւսներին **ես եմ պատուիրում, ոչ թէ Տէրը**. եթէ մի եղբայր անհաւատ կին ունենայ, եւ նրան հաճելի լինի ապրել նրա հետ, նրան թող չթողնի:

«Իսկ կոյսերի մասին Տիրոջից հրաման չունեմ. **բայց խրատ եմ տալիս, որպէս Տիրոջից ողորմութիւն գտած մէկի, որ վստահելի է:**»

## ՊՈՂՈՍԸ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՈՒ Է

(Կորնթացիներ Ա 9:19-21) «թէպէտեւ ազատ էի բոլորից, բայց իմ անձը դրի բոլորի ծառայութեան համար, որպէսզի շահեմ շատերին: « Հրեաների հետ եղայ ինչպէս հրեայ, որպէսզի շահեմ հրեաներին: «Եղայ օրէնքի տակ, ինչպէս օրէնքի տակ եղածները. ոչ թէ նրա համար, որ օրէնքի տակ էի, այլ որպէսզի շահեմ նաեւ նրանց, որ օրէնքի տակ են: Օրէնքի տակ չեղողների հետ եղայ ինչպէս օրէնքի տակ չեղող մարդ, ոչ թէ նրա համար, որ Աստծու օրէնքին ենթակայ չէի, այլ՝ Քրիստոսի՛ օրէնքի տակ էի, որպէսզի շահեմ օրէնքի տակ չեղողներին:»

## ՀԻՍՈՒՍԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐԸ ՄԵՂԱԴՐՈՒՄ ԵՆ ՊՈՂՈՍԻՆ

(Գործք 21:20-21) «Եւ նրանք, լսելով, փառաւորում էին Աստծուն ու նրան ասում. «Տեսնո՞ւմ ես, եղբա՛յր, հազարաւոր հաւատացեալ հրեաներ կան, եւ բոլորն էլ նախանձախնդիր են օրէնքին:

«Բայց քո մասին իրազեկ եղան, թէ հեթանոսների մէջ գտնուող բոլոր հրեաներին ուսուցանում ես հրաժարուել Մովսէսի օրէնքից. ասում ես, որ նրանք իրենց որդիներին չթլփատեն եւ կրօնի աւանդութիւնների համաձայն չգնան:»

**Ուստի, նա բողոքում էր Տիմոթեոսին, որ նրանք բոլորը կասկածի տակ էին դնում նրան և լքում էին ասելով.**

(Տիմոթեոս Բ 1:15) «Այս բանը իմացի՛ր, որ մեզնից հեռացան բոլոր նրանք, որ Ասիայից էին, որոնց թւում են Փիգեղոսը եւ Հերմոգենէսը:»

(Տիմոթեոս Բ 4:16- 17) «Առաջին ատեանի ժամանակ ոչ ոք ինձ թիկունք չկանգնեց. բոլորը լքեցին ինձ: Այդ թող նրանց յանցանք չհամարուի:

«Բայց Տէրն օգնեց ինձ եւ զօրացրեց ինձ, որպէսզի ինձնով հաստատուի քարոզութիւնը, եւ բոլոր հեթանոսները լսեն այն: Առիւծի բերանից փրկուեցի ես:»



## ՊՈՂՈՍԸ ՕՐԵՆՔԸ ԱՆՎԱՆԵՑ «ՀԻՆ»

(Գաղատացիներ 5:4) «Դուք, որ օրէնքով էք արդարանում, Քրիստոսից **կտրուած էք, շնորհից ընկած»**

(Հռոմեացիներ 7:6) « Բայց այժմ բեռնաթափուեցինք օրէնքից, քանզի մեռա՛նք այն բանի նկատմամբ, որով բռնուած էինք, որպէսզի ծառայենք Հոգու նորոգութեամբ եւ **ո՛չ գրուածքի հնութեամբ** :»

(Գաղատացիներ 2:16) «գիտենք, որ **մարդ չի արդարանայ օրէնքի գործերով**, այլ միայն՝ Յիսուս Քրիստոսի[1] հաւատով. եւ մենք հաւատացինք Քրիստոս Յիսուսին, որպէսզի արդարանանք Քրիստոսի հաւատով եւ ո՛չ թէ օրէնքի գործերով. քանի որ ոչ մի մարդկային էակ չի արդարացուելու օրէնքի գործերով:»

(Գաղատացիներ 3:10) «Նրանք, որ օրէնքի գործադրողներն են, **անէծքի տակ են**, քանզի գրուած է,

---

[1] Պողոսի այս գաղափարը ամբողջովին հակասում է Ջեյմս 20:1 –ի և Եզեկիել 14:14-ին: «Նրանք պետք է բաժանեն միայն իրենց հոգիներով և իրենց արժանապատվությամբ:» Այն նույնիսկ հակասում է Պողոսի իսկ խոսքերին, որը ասում է. «Աստված կվարձատրի յուրաքանչյուր մարդու, ըստ իր արարքների:» (Հռոմեացիներ 2:6)

թէ՝ «Անիծեալ է ամէն մարդ, որ օրէնքի գրքում եղած բոլոր գրուածները չի պահում եւ չի գործադրում»:

(Կորնթացիներ Բ 3:6) «որը եւ կարող դարձրեց մեզ նոր Ուխտի պաշտօնեաներ լինելու՝ ոչ թէ գրով, այլ հոգով, քանի որ օրէնքը, որ գիր է, սպանում է, իսկ հոգին՝ կենդանացնում:»

## ՎԵՐՋԱՊԵՍ ՆԱ ՉԵՂՅԱԼ ՀԱՄԱՐԵՑ ԱՅՆ

(Եբրայեցիներին 8: 8 -9) «Եւ ահա մեղադրում է նրանց եւ ասում.
« Արդ, նոր ուխտի մասին խօսելով՝ նա հին դարձրեց առաջինը. եւ ինչ հնանում է ու ծերանում, **մօտ է անհետանալու**:»

## ԱՐԴՅՈ՞Ք ՊՈՂՈՍԸ ՀԱՐԳՈՒՄ ԷՐ ՀԻՍՈՒՍԻՆ

(Գաղատացիներին 3:13) «Քրիստոս մեզ վերստին գնեց օրէնքի անէծքից՝ անէծք դառնալով մեզ [1]համար

[1] Թող նրանք, ովքեր իրոք սիրում են Հիսուս Քրիստոսին, հիշեն, որ այդ մեծ Մարգարեն անիծվել է իրենց իսկ Աստվածաշնչի մեջ: Քանի որ Իսլամի մեջ այն բավարար և մեծ ամոթ է, այսպիսի նկարագրություն տալ Հիսուսին: Բարձր է Հիսուսը այն ամենից, ինչպես որ նրանք նկարագրում են նրան:

(որովհետեւ գրուած է, թէ՝ «Անիծեալ է այն մարդը, որը կախուած է փայտից»),

## ԱՐԴՅՈ՞Ք ՊՈՂՈՍԸ ՄԵՂՍԱԳՈՐԾ ԷՐ, ԹԵ ԱՆՄԵՂ

(Գաղատացիներ 2:15) «Իսկ մենք, որ իսկական հրեաներ ենք եւ ոչ թէ այդ հեթանոս **մեղաւորներից**:»

(Հռոմեացիներին 7:15- 24) «քանի որ չեմ իմանում, ինչ որ գործում եմ. ոչ թէ այն եմ անում, ինչ որ ուզում եմ, այլ գործում եմ այն, ինչ որ ատում եմ. «ապա եթէ անում եմ այն, ինչ որ չեմ կամենում, դրանով իսկ վկայում եմ, թէ օրէնքը բարի է:

«Իսկ արդ, ե՛ս չէ, որ գործում եմ այն, այլ՝ **իմ մէջ բնակուող մեղքը:**
«Գիտեմ, որ ոչ մի բարի բան չի բնակւում իմ մէջ, այսինքն՝ իմ մարմնի մէջ, որովհետեւ կամենալը կար իմ մէջ, իսկ բարին գործելը՝ ոչ. «որովհետեւ ոչ թէ անում եմ բարին, որ կամենում եմ, այլ գործում եմ չարը, որը չեմ կամենում:

«Իսկ եթէ անում եմ այն, ինչ որ չեմ կամենում, այլեւս ե՛ս չէ, որ անում եմ այն, այլ՝ **իմ մէջ բնակուող մեղքը**:

«Եւ արդ, գտնում եմ այն բանի օրէնքը, որ, երբ ես ուզում եմ բարին գործել, իմ դէմ չարն է ելնում.

«հաճելի է ինձ Աստծու օրէնքը՝ ներքին մարդու տեսակէտից,

«բայց իմ մարմնի անդամների մէջ տեսնում եմ այլ օրէնք, որ պայքարում է իմ մտքի օրէնքին հակառակ եւ ինձ գերի է դարձրել **մեղքի օրէնքին, որ կայ իմ մարմնի անդամների մէջ։**

«Ի՜նչ խղճալի մարդ եմ ես։ Ո՞վ կը փրկի ինձ այս մարմնից, որ ինձ մահուան է տանում։[1]

## ԱՍՏՎԱԾԱՇՆՉՅԱՆ ԱՊՇԵՑՈՒՑԻՉ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

## ԲԱՆԱՎԵՃ ԾԱՌԵՐԻ ՄԻՋև

[1] Ես առաջարկություն կանեմ, որ դուք, ներկայացնեք Պողոսի խոստովանությունը, Նորաստեղծ գործոններին և հարց ուղղեք նրանց, թե ինչպե՞ս է Չարիքի ոգին համապատասխանում սրբի սուրբ մարմնին և խոչընդոտում է բարիքից, քանի որ ունի Աստծո ոգին իր մեջ, որը միևնույն ժամանակ հայտնություն է ձեր Աստվածաշնչի մեջ, որը դուք ընթերցում եք այսօր։ Ո՞րն է Սուրբ Հոգու օգտակարությունը, եթե այն չի հաղթում մարմնի մեջ գտնվող չարիքը և ի՞նչ է կատարվում ձեր նման Քրիստոնյաների հետ։ Նրա համար դժվարություն է հանդիսանում ձերբազատվել չար հոգուց, կամ հնարավոր չէ խաբել Սուրբ Հոգուն։ Ուստի, ձեր մարմինների մեջ գոյություն չունի Սուրբ Հոգի, այլ «Ոգր»։

(Դատաւորներ 9:8-15) «Ծառերը գնացին իրենց համար թագաւոր օծելու եւ ասացին ձիթենուն. «Թագաւորի՛ր մեզ վրայ»:

**«Ձիթենին** նրանց ասաց. «Թողնեմ իմ պարարտութիւնը, որով փառաւորում են ինձ Աստուած եւ մարդիկ, եւ գնամ ծառերի՞ վրայ իշխեմ»:

«Ծառերն ասացին **թզենուն.** «Եկ թագաւորի՛ր մեզ վրայ»:

«Թզենին նրանց ասաց. «Իմ քաղցրութիւնն ու իմ լաւ պտուղները թողած՝ գնամ ծառերի՞ վրայ իշխան լինեմ»:

«Ծառերն ասացին որթատունկին. «Եկ թագաւորի՛ր մեզ վրայ»:
"Որթատունկը նրանց ասաց. «Իմ գինին եւ Աստծու ու մարդկանց ուրախութիւնը [1]թողած՝ գնամ ծառերի՞ իշխան լինեմ»:
"Ծառերն ասացին փշին. «Եկ թագաւորի՛ր մեզ վրայ»:

**«Փուշն ասաց** ծառերին. «Եթէ իսկապէս դուք ինձ ձեզ վրայ թագաւոր էք օծնում, եկէք ծածկուեցէ՛ք իմ հովանու տակ, եթէ ոչ՝ փշից կրակ դուրս կը գայ եւ կ՚այրի Լիբանանի մայրիները»:

## ՀՈՎՀԱՆՆԵՍԻ ՈՒՇԱԳՐԱՎ ՏԵՍԻԼՔՆԵՐԸ

---

[1]Ինչու՞ է այն ուրախացնում Աստծուն:

(Յայտնություն 4:5-8) «Եւ այդ աթոռից ելնում էին փայլատակումներ, ձայներ եւ որոտներ. եւ աթոռի առաջ կային բորբոքուած կրակի եօթը ջահեր, որ **Աստծու եօթը Հոգիներն են**։

«Եւ աթոռի առաջ՝ **ապակէ ծով**, նման սպիտակ բիւրեղի, եւ աթոռի մէջտեղում ու աթոռի շուրջը՝ **չորս կենդանիներ՝ առջեւից ու յետեւից աչքերով լի**:

Եւ առաջին կենդանին նման էր առիւծի. եւ երկրորդ կենդանին՝ նման ցլի. եւ երրորդ կենդանին ունէր մարդու դէմք, իսկ չորրորդ կենդանին նման էր թռչող արծուի:

«Եւ չորս կենդանիները, որոնցից ամէն մէկը շուրջանակի ունէր վեց թեւ եւ **ներսից լի էր աչքերով,** զօր ու գիշեր չէին դադարում ասելուց. «Սո՜ւրբ, Սո՜ւրբ, Սո՜ւրբ, Սո՜ւրբ, Սո՜ւրբ, Սո՜ւրբ, Սո՜ւրբ, Սո՜ւրբ, Սո՜ւրբ, Ամենակա՜լ Տէր Աստուած, դու, որ Է-ն ես եւ ես եւ որ գալու ես»:

(Յայտնություն 5:6-8 և 12 -13) «Եւ տեսայ, որ աթոռի եւ չորս կենդանիների ու երէցների միջեւ կար մի Գառ՝[1]

---

[1] ՛Գառ՛ բառը գրվում է մնեծատառով, որովհետև այն վերաբերում է Հիսուսին, ում ընդունում են որպես աստվածային և ով մարմնավորվում է կենդանու, ինչպես հավատում են նաև Հինդուսները: Նրանք

մորթուած. նա ունէր եօթը եղջիւր եւ եօթը աչք, որ Աստծու եօթը Հոգիներն են՝ ուղարկուած ամբողջ երկրով մէկ:

«Եւ նա եկաւ վերցրեց գիրքը աթոռի վրայ նստողի աջ ձեռքից:

«Եւ երբ առաւ գիրքը, **չորս կենդանիներն** ու քսանչորս երէցներն ընկան Գառան առաջ. եւ **իւրաքանչիւրն ունէր քնար եւ խնկով լի ոսկէ բուրվառ**, որ սրբերի աղօթքներն են:

«Նրանք ասում էին բարձր ձայնով. «Արժանի է այդ մորթուած Գառը ընդունելու մեծութիւն, իմաստութիւն, զօրութիւն, պատիւ, փառք եւ օրհնութիւն:

«Լսեցի նաեւ, որ երկնքում, երկրի վրայ եւ ծովում եղած բոլոր արարածները, ինչպէս նաեւ դրանց մէջ եղած ամէն ինչ ասում էին. «Նա, որ նստած է աթոռի վրայ,

---

հավատում են, որ Աստված մարմնավորվել է կենդանու, մասնավորապես կովի :

Քրիստոնյաները գործածում են մեծատառը, որպես երեք անձի աստվածայնության գաղափար . Հայր, Որդի կամ գառ և Սուրբ Հոգի, մինչ դեռ Իսլամի մեջ, միայն մեկըն է արժանի մեծատառի, այն է ամենակարող Ալլահը:

ինչպէս եւ Գառը, թող օրհնեալ, բարձրացեալ եւ փառաւորեալ լինի յաւիտեանս յաւիտենից:»

(Յայտնություն 12:1-3 և 13-16) « Եւ երկնքում մեծ նշան երեւաց. **մի կին՝ արեգակն իր վրայ առած, լուսինն իր ոտքերի տակ** եւ իր գլխի վրայ մի պսակ՝ տասներկու աստղերից:

«Նա յղի էր ու ճչում էր երկունքի մէջ եւ բազում ցաւերով մօտ էր ծնելու:

«Եւ երկնքում երեւաց մի այլ նշան. **ահա հրակարմիր մի մեծ վիշապ, որ ունէր եօթը գլուխ** եւ տասը եղջիւր. նրա գլուխների վրայ կար եօթը խոյր:

«Եւ երբ վիշապը տեսաւ, թէ ինքը երկիր ընկաւ, հետապնդեց այն կնոջը, որ արու զաւակ էր ծնել:

«Եւ կնոջը **տրուեց մեծ արծուի երկու թեւ**, որպէսզի թռչի անապատ, իր տեղը, այնտեղ, ուր, հեռու օձից, կերակրւում էր երեք եւ կէս տարի:

«Ապա օձը իր բերանից հեղեղի պէս ջուր թափեց կնոջ յետեւից, որպէսզի նրան ընկղմի:

**«Եւ երկիրն օգնեց կնոջը. բացեց իր բերանը եւ կուլ տուեց այն ջուրը**, որը վիշապը թափել էր իր բերանից:»

(Յայտնություն 17:14) «Եւ սրանք պատերազմելու են **Գառան դէմ**, եւ Գառը նրանց յաղթելու է, քանի որ նա **Տէրն է տէրերի** եւ Թագաւորը՝ թագաւորների. եւ ովքեր

նրա հետ են, կանչուածներ են, ընտրեալներ եւ հաւատարիմներ:»

## ՀԱԿԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

ԱՅՍ ԾԱԳՈՒՄՆԱԲԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՏԿԱՆՈՒՄ Է ՀՈՎՍԵՓԻՆ, ՈՉ ԹԵ ՀԻՍՈՒՍԻՆ

| **Մատթեոս 1:8** | **Ղուկաս 3:23** | |
|---|---|---|
| 1 –Դավիթ | 1-Դավիթ | 29- Մատաթեի |
| 2 – Սողոմոն | 2 –Նաթան | 30 –Մատտաթայի |
| 3-Ռոբովամ | 3 –Մաաթի | 31 –Նանգե |
| 4 –Աբիա | 4 -Մեննա | 32-Եղսի |
| 5 –Ասափ | 5 -Մելեի | 33Նաւում |
| 6 -Յոսափաթ | 6 -Եղիակիմ | 34 -Բոոս |
| 7 –Յորամ | 7 -Յովնամ | 35 -Մատտաթա |
| 8 –Օզիա | 8 –Յովսեփ | 36 -Յովսեփ |
| 9 -Յովաթամ | 9 -Յուդա | 37 -Յաննե |
| 10 -Աքազ | 10 -Սիմեոն | 38 -Մեղքի |

| | | |
|---|---|---|
| 11- Եզեկիա | 11 –Ղևիի | 39-Ղևիի |
| 12 -Մանասե | 12 -Մատտաթ | 40 -Մատտաթ |
| 13 -Ամոս | 13 -Յորամ | 41 - Հելի |
| 14 -Յոսիա | 14 -Էսղիի | 42- Յովսեփ |
| 15 -Յեքոնիա | 15 -Յեսու | 43 -Յեսուս |
| 16 -Աքին | 16 -Երեի | |
| 17 -Զորոբաբել | 17 -Ելմոդադ | |
| 18 -Աբիուդ | 18 -Կոսամ | |
| 19-Եղիակիմ | 19 -Աղդէ | |
| 20 -Ազոր | 20-Մելլէի | |
| 21 -Սադոկ | 21 -Ների | |
| 22 -Աքին | 22 -Սաղաթիել | |
| 23 -Եղիուդ | 23 -Զորոբաբել | |
| 24 -Եղիազար | 24 -Րեսա | |
| 25 -Մատթան | 25 -Յովնան | |

| | | |
|---|---|---|
| 26 -Յակոբին | 26 -Յուդա | |
| 27 -Յովսեփին | 27 -Յովսեփ | |
| 28 -Յիսուս | 28 -Սիմեոն | |

(Մատթեոս 1 :8) «Հիսուսի» ծագումնաբանությունը ներառում է նախահայրերի **28** անուն:

(Ղուկաս 3:23) «Հիսուսի» ծագումնաբանությունը ներառում է 42 տարբեր նախահայրերի անվանումներ, որոնք տարբերվում են Մատթեոսից:[1]

## ՀԻՍՈՒՍԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐԻ ՀԱԿԱՍՈՂ ԱՆՎԱՆՈՒՄՆԵՐԸ

---

[1] Եթե Քրիստոնյաները փորձեն ներողամտությամբ վերաբերել այս սխալին ասելով, որ մյուս հետնորդները պատկանում են Հիսուսին մորական կողմից, ապա այս մեծ վիրավորանք կլինի նրա նկատմամբ, քանի որ այս ծգումնաբանությունը պատկանում է հյուսն Հովսեփին: Եվ վերլուծելով հակասությունները, մենք կարող ենք տեսնել, որ հյուսն Հովսեփի երկու տարբեր հայրերին:Ըստ Մատթեոսի նրա հայրն է Յակուբը, մինչ ըստ Ղուկասի նրա հայրն է Հելլը:

(Մատթեոս 10:2) «Մատթեոսը տալիս է Հիսուսի աշակերտների անունները:»

(Ղուկաս 6:13) «Սակայն Ղուկասը Հիսուսի աշակերտներին տալիս է անուններ, որոնք հակասում են Մատթեոսի տված անուններից:»

| **Մատթեոս 10:2 և Մարկոս 3:16** | **Ղուկաս 6:14** |
|---|---|
| 1 – Սիմոն Քանանացին | Սիմոնը, որին կոչում են Պետրոս |
| 2- Սիմոն, որին կոչում են Պետրոս | Անդրեասը, նրա եղբայրը |
| 3- Անդրեոս | 3- Ջեյմս Զաբադիի որդին |
| 4- Ջեյմսը Զաբադիի որդին | 4- Հովհաննեսը, նրա եղբայրը |
| 5- Հովհաննես | 5- Փիլիպոս |
| 6- Փիլիպոս | 6- Բարդուղեմեոս |
| 7- Բարդողեմեոս | 7- Մատթեոս տուրքահավաքը |

| | |
|---|---|
| 8 -Մատթեոս | 8- Թոմաս |
| 9-Թոմաս | 9-Ջեյմս, Ալփահոսի որդին |
| 10-Ջեյմս Ալփահոսի որդին | 10- Սիմոն Զեալոթցին |
| 11-Լաբաոսը, որի կոչում են Թադեոս | 11-Հուդա, Ջեյմսի որդին |
| 12- Հուդա Իսկավորտարացին | 12- Հուդա Իսկավորտացին[1] |

## ԱՅԼ ՀԱԿԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐ

(Մատթեոս 1:16) «Մատթանը ծնեց Յակոբին. **Յակոբը ծնեց Յովսէփին**՝ Մարիամի մարդուն, որի նշանածն էր կոյս Մարիամը, որից ծնուեց Յիսուս, որ անուանուեց Քրիստոս:»

---

[1] Մարկոսը և Մատթեոսը ավելացնում են. Լաբաոսը և սիմոն Քանանացին բաց են թողնված. Սիմոն խանդոտը և Հուդան Ջեյմսի եղբայրը: Մինչ Ղուկասը ավելացնում է . Սիմոն խանդոտը և Հուդան, Ջեյմսի եղբայրը: Նա բաց է թողնում. Լաբոսը և Սիմոն քանանացին:

(Ղուկաս 3:28) «եւ սա՝ Սիմէոնի, եւ սա՝ **Յուդայի, եւ սա՝ Յովսէփի**, եւ սա՝ Յովնամի, եւ սա՝ Եղիակիմի,»

(Կորնթացիներ Ա 15:5) «եւ երեւաց Կեփասին եւ ապա՝ **Տասներկուսին**.»

(Մատթեոս 28:17) «Իսկ **տասնմէկ** աշակերտները գնացին Գալիլիա, այն լեռը, ուր Յիսուս իրենց հետ ժամադրուել էր:»

(Մատթեոս 19:28) «Յիսուս նրանց ասաց. «Ճշմարիտ եմ ասում ձեզ, թէ դուք, որ եկաք իմ յետեւից, երկրորդ գալստեան, երբ որ մարդու Որդին իր փառքի աթոռին կը նստի, դուք էլ կը նստէք տասներկու աթոռների վրայ՝ դատելու Իսրայէլի տասներկու ցեղերին:»

(Հովհաննես 6:71) « Յիսուս նրանց պատասխանեց. «Չէ՞ որ ես եմ ընտրել ձեզ՝ Տասներկուսիդ. եւ ձեզանից մէկը սատանայ է»:

(Հովհաննես 8:14) « Յիսուս պատասխանեց եւ ասաց նրանց. «**Թէպէտ ես վկայում եմ իմ անձի մասին, իմ վկայութիւնը ճշմարիտ է,** որովհետեւ գիտեմ, թէ որտեղից եկայ եւ ուր եմ գնում: Բայց դուք չգիտէք՝ որտեղից եմ գալիս կամ ուր եմ գնում:»

(Հովհաննես 5:31) «**Եթէ ես եմ վկայում իմ մասին, իմ վկայութիւնը հաւաստի չէ:»**

(Հովհաննես 8:29) **«Եւ ով ինձ ուղարկեց, ինձ հետ է. ինձ միայնակ չթողեց**, որովհետեւ ես միշտ անում եմ, ինչ որ նրան է հաճելի»

(Մատթեոս 27:46) «Ժամը երեքի մօտ Յիսուս բարձր ձայնով գոչեց ու ասաց. «Էլի՛, Էլի՛, լա՞մա սաբաքթանի», այսինքն՝ **Աստուա՛ծ իմ, Աստուա՛ծ իմ, ինչո՞ւ թողեցիր ինձ:**»

Ձկնորսի պատմությունը տեղի է ունենում Հիսուսի առաքելության սկզբում:
(Ղուկաս 5:1) «Եւ մինչ ժողովուրդը խռնւում էր նրա շուրջը՝ լսելու Աստծու խօսքը**, նա կանգնած էր Գեննեսարէթի ծովակի ափին:»**

Նաև (Մատթեոս 4:18) «**Մինչ Յիսուս Գալիլիայի ծովեզերքով քայլում էր**, տեսաւ երկու եղբայրների՝ Սիմոնին, որ Պետրոս էր կոչւում, եւ նրա եղբայր Անդրէասին. ծովի մէջ ուռկան էին գցում, քանի որ ձկնորսներ էին:»

Ձկնորսի պատմությունը տեղի ունեցավ Հիսուսի համբարձումից հետո:

(Հովհաննես 21:1) «Սրանից յետոյ Յիսուս դարձեալ իրեն յայտնեց իր աշակերտներին **Տիբերիայի ծովեզերքի մօտ**. եւ յայտնեց այսպէս:»

Այստեղ Հիսուսը մաքրեց տաճարը վաճառականներից մինչ թզենու ծառի մոտով անցնելը, որը նա անիծեց:

(Մատթեոս 21:12) «Եւ Յիսուս **մտաւ տաճար ու դուրս հանեց բոլոր նրանց, որ տաճարի մէջ վաճառում ու գնումներ էին անում.** նա շուռ տուեց լումայափոխների սեղաններն ու աղաւնեվաճառների աթոռները:»

Այստեղ Հիսուսը մաքրեց տաճարը վաճառականներից այն բանից հետո, երբ նա անցավ թզենու մոտով, որը նա անիծեց:

(Մարկոս 11:13) «Եւ հեռուից մի **տերեւալից թզենի տեսնելով՝ եկաւ**, որ թերեւս նրա վրայ մի բան գտնի. եւ երբ նրան մօտեցաւ, ոչինչ չգտաւ, այլ միայն՝ տերեւ, որովհետեւ տակաւին թզի ժամանակը չէր:»

(Թագավորություններ Բ 24:1) «Տիրոջ բարկութիւնը դարձեալ բորբոքուեց Իսրայէլի վրայ: **Նա Դաւթին գրգռեց նրանց դէմ՝ ասելով. «Գնա՛ հաշուառում կատարի՛ր Իսրայէլում եւ Յուդայի երկրում:»**

(Մնացորդաց Ա 21:1) «**Սատանան ելաւ Իսրայէլի մէջ ու դրդեց Դաւթին մարդահամարի ենթարկելու Իսրայէլը:»**

(Թագավորություններ Բ 10:18) «Ասորիները փախան իսրայէլացիների առաջից, եւ **Դաւիթը ասորիների եօթը հարիւր մարտակառքերն** ու քառասուն հազար հեծեալները ոչնչացրեց, զօրքի հրամանատար Սոբակին հարուածեց, ու սա տեղնուտեղը մեռաւ:»

(Մնացորդաց Ա 19:18) «Ասորիները փախան Դաւթի առջեւից: **Դաւիթը ասորիներից եօթը հազար**

**մարտակառքի հեծեալներ ու քառասուն հազար հետեւակ կոտորեց**, սպանեց զօրքի հրամանատար Սոփաքին։»

## ԽԱՉԵԼՈՒԹՅԱՆ ՀԱԿԱՍՈՂ ՊԱՏՈՒՄՆԵՐԸ

(Մարկոս 15:25) «Առաւօտեան ժամը ինն էր, երբ նրան խաչեցին։»

(Հովհաննես 19:15) «Զատկի նախօրէն էր, եւ կէսօրուայ մօտ էր։ Եւ նա հրեաներին ասաց. «Ահա ձեր թագաւորը՝ ձեզ։»

(Մատթեոս 27:32) «Եւ դուրս ելնելով՝ գտան կիւրենացի մի մարդ՝ Սիմոն անունով, ու նրան ստիպեցին, որ նա խաչը կրի։»

Նաև (Ղուկաս 23 :26) «Երբ նրան առան գնացին, բռնեցին Սիմոն Կիւրենացի անունով մէկին, որը հանդից էր գալիս. նրա վրայ դրեցին խաչը, որ այն բերի Յիսուսի յետեւից։»

և (Մարկոս 15:21) «Եւ ստիպեցին Սիմոն Կիւրենացուն՝ Ալեքսանդրի եւ Ռուփոսի հօրը, որը ագարակից էր գալիս ու այդ տեղով էր անցնում, որ Յիսուսի խաչափայտը կրի։»

(Հովհաննես 19:18) «Եւ նրանք առան Յիսուսին եւ տարան։ **Եւ խաչափայտը նա ինքն էր վերցրել** եւ

բարձրացնում էր այն տեղը, որի անունն էր Գագաթ, իսկ եբրայերէն կոչւում էր Գողգոթա,»

(Մարկոս 15:24) «**Եւ նրան խաչը հանեցին:** Եւ նրա հագուստները բաժանեցին՝ դրանց վրայ վիճակ գցելով, թէ ով ի՛նչ պիտի վերցնի:»

(Պետրոս Ա 2:25) «**նա, որ մեր մեղքերը իր մարմնով բարձրացրեց խաչափայտի վրայ,** որպէսզի մենք, զերծ լինելով մեղքերից, ապրենք արդարութեան համար. նա, որի վէրքերով բժշկուեցիք դուք:»

Տես նույնպես (Գաղատացիներ 3:13) « Քրիստոս մեզ վերստին գնեց օրէնքի անէծքից՝ անէծք դառնալով մեզ համար (որովհետեւ գրուած է, թէ՝ «Անիծեալ է այն մարդը, **որը կախուած է փայտից»**

(Մարկոս 15:23) « **Զմուռսով խառնուած գինի տուին նրան**, բայց նա չվերցրեց:»

(Մատթեոս 27:34) « Յիսուսին **լեղի խառնած գինի տուեցին խմելու**, եւ երբ համտեսեց, չկամեցաւ խմել:»

(Մատթեոս 27:44) «**Նրա հետ խաչուած աւազակներն էլ էին նոյն ձեւով նախատում նրան:**»

(Ղուկաս 23:39-43) «Իսկ կախուած չարագործներից մէկը հայհոյում էր նրան եւ ասում. «Դու չե՞ս Քրիստոսը. փրկի՛ր ինքդ քեզ եւ մեզ»:

«Նրա ընկերը նրան սաստելով՝ պատասխան տուեց եւ ասաց. «Աստծուց չե՞ս վախենում, դու, որ նոյն պատիժն ես կրում:
«Եւ մենք իրաւացիօրէն արժանի հատուցումն ենք ստանում այն գործերի համար, որ կատարեցինք, իսկ սա որեւէ վատ բան չի արել»:
«Եւ ասաց Յիսուսին. «Յիշի՛ր ինձ, Տէ՛ր, երբ գաս քո թագաւորութեամբ»:
«Եւ Յիսուս նրան ասաց. «Ճշմարիտ եմ ասում քեզ, այսօր ինձ հետ դրախտում կը լինես»:

(Մատթեոս 27:5) «Եւ արծաթ դրամները նետեց տաճարի մէջ եւ հեռացաւ ու **գնաց ինքն իրեն կախեց:»**

(Գործք 1:18) «Սա իր անիրաւութեան վարձով մի ագարակ գնեց եւ **ուռչելով մէջտեղից պատռուեց, ու նրա ամբողջ փորը դուրս թափուեց:»**

(Հովհաննես 20 :1) «Եւ կիրակի օրը **Մարիամ Մագդաղենացին առաւօտեան արշալոյսին գերեզման է գալիս** եւ տեսնում է, որ քարը գերեզմանի դռնից վերցուած է:»

(Մատթեոս 28:1) « Շաբաթ օրուայ երեկոյեան, երբ կիրակին լուսանում էր, **Մարիամ Մագդաղենացին եւ միւս Մարիամը եկան գերեզմանը տեսնելու:**»

(Ղուկաս 24:10) «**Եւ Մարիամ Մագդաղենացին, Յովհաննան, Յակոբի մայր Մարիամը եւ նրանց հետ**

**ուրիշ կանայք** էին, որ այս բաները պատմեցին առաքեալներին:»

(Մարկոս 16:1) «Եւ երբ շաբաթն անցաւ, **Մարիամ Մագդաղենացին, Յակոբոսի մայր Մարիամը եւ Սաղոմէն գնացին** խնկի պատրաստութիւն տեսան, որպէսզի գան եւ օծեն նրա մարմինը:»

(Հովհաննես 20:12) «**եւ տեսաւ երկու հրեշտակներ**՝ սպիտակների մէջ, որոնք նստել էին՝ մէկը՝ սնարին, եւ միւսը՝ ոտքերի մօտ, այնտեղ, ուր Յիսուսի մարմինն էր եղել:»

(Մատթեոս 28:2) «Եւ ահա մեծ երկրաշարժ եղաւ, որովհետեւ **Տիրոջ հրեշտակը** երկնքից իջնելով՝ մօտեցաւ, դռնից վէմը մի կողմ գլորեց ու նստեց նրա վրայ:»

(Ղուկաս 24:4) «Եւ մինչ նրանք զարմացած էին այդ բանի վրայ, ահա լուսաւոր զգեստներով **երկու մարդիկ** հասան նրանց մօտ:»

(Մարկոս 16:5) «Եւ ներս, գերեզման մտնելով՝ **տեսան մի երիտասարդի**, որ նստած էր աջ կողմը՝ սպիտակ պատմուճան հագած. եւ զարհուրեցին:»

(Ղուկաս 24:9) «Եւ վերադարձան ու **պատմեցին այս ամէնը Տասնմէկին** եւ բոլոր միւսներին:»

(Մարկոս 16:8) **«Եւ երբ այս լսեցին, ելան ու փախան գերեզմանից, քանի որ սարսափահար էին եղել. եւ ոչ ոքի բան չասացին**, որովհետեւ վախենում էին:»

## ՂՈՒՐԱՆԻ և ԱՍՏՎԱԾԱՇՆՉԻ ՏԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

(Ելք 31:17) «իմ ու Իսրայէլի որդիների միջեւ: Դա իմ յաւիտենական պայմանն է, **որովհետեւ Տէրը վեց օրում ստեղծեց երկինքն ու երկիրը, իսկ եօթներորդ օրը դադար տուեց եւ հանգստացաւ**»:

(Ղուրան 50:38) «Մենք արարեցինք երկինքները և երկիրը և ամբողջը նրանց միջև վեց օրվա ընթացքում, ոչ մի հոգնածության զգացում չպատեց մեզ:»

(Ծննդոց 1:1-5 և12 և 16) «Ի սկզբանէ Աստուած ստեղծեց երկինքն ու երկիրը:

«Երկիրն անձեւ ու անկազմ էր, խաւար էր տիրում անհունի վրայ, եւ Աստծու հոգին շրջում էր ջրերի վրայ:

«Եւ Աստուած ասաց. «Թող լոյս լինի»: Եւ լոյս եղաւ:

« Աստուած տեսաւ, որ լոյսը լաւ է, եւ Աստուած լոյսը բաժանեց խաւարից:
« Աստուած լոյսը կոչեց ցերեկ, իսկ խաւարը կոչեց գիշեր: Եւ եղաւ երեկոյ, եւ եղաւ առաւօտ՝ օր առաջին:»

« հողը ամբողջ երկրի վրայ ցանելու սերմը իր մեջ պարունակող դալար բոյս եւ իր տեսակի սերմը իր մեջ

պարունակող, միրգ տուող ծառ աճեցրեց: Աստուած տեսաւ, որ լաւ է:»

« Աստուած ստեղծեց երկու մեծ լուսատուներ. մեծ լուսատուն՝ ցերեկն իշխելու, իսկ փոքր լուսատուն՝ գիշերն իշխելու համար, ինչպէս նաեւ աստղեր:»

(Ղուրան 21:30) « Արդյո՞ք անհավատները չեն տեսնում, որ երկինքները և երկիրը միացած են միմյանց, որպես արարման մեկ միավոր, մինչ մենք պատռելով նրանց անջատում ենք:»

(Ծննդոց 1:26) « Աստուած ասաց. «**Մարդ ստեղծենք մեր կերպարանքով ու նմանութեամբ**, նա թող իշխի ծովի ձկների, երկնքի թռչունների, ողջ երկրի անասունների եւ երկրի վրայ սողացող բոլոր սողունների վրայ:»»

(Ղուրան 42:11) «Գոյություն չունի ոչինչ նմանությամբ նրա և նա Միակն է, որ լսում և տեսնում է:»

(Ղուրան 112:3-4) «Նա չի ծնում ոչ էլ ծնվում և ոչինչ չկա նմանությամբ նրա:»

(Սաղմոս 12:1) «Մինչեւ ե՞րբ, Տէ՛ր, պիտի մոռանաս ինձ իսպառ, մինչեւ ե՞րբ պիտի շրջես երեսդ ինձնից:»

(Ղուրան 20:52) «Իմ Տերը ոչ սխալվում է, **ոչ էլ մոռանում**:»

(Սաղմոս 43:23) «**Զարթնի՛ր, ինչո՞ւ ես ննջում, Տէ՛ր.** ելիր եւ մի՛ մերժիր մեզ իսպառ**:**»

(Սաղմոս 78:64) «Տէրը **կարծես քնից արթնացաւ**, ինչպէս գինուց սթափուող հսկայ:» (Ղուրան 2:225) «Ալլահ, Չկա աստված բացառությամբ Նրա, ամեն կենդանիի Ինքնատիրապետողը: Ոչ նինջը, ոչ էլ քունը չի պատում Նրան:»

(Ամբակում 1:2) «Մինչեւ ե՞րբ, Տէ՛ր, աղօթեմ, **բայց դու չլսես**, զրկուած՝ ձայն տամ քեզ, եւ դու չփրկես:»

(Ղուրան 14:39) «Իրավմամբ, իմ Տերը նա է, աղոթքին Ունկնդրողը:»

(Ղուրան 20:17) «Եթե դուք բարձրաձայն արտաբերեք խոսքը, կարևոր չէ, քանի որ իրոք, Նա գիտի գաղտնին և ինչը դեռ թաքնված է:»

(Զաքարիա 1:12) «Պատասխանեց Հրեշտակը եւ ասաց. «**Տէ՛ր Ամենակալ, մինչեւ ե՞րբ չես ողորմելու Երուսաղէմին** եւ Յուդայի երկրի քաղաքներին, որոնց այս եօթանասուն տարի է, ինչ անտես ես արել»:

(Սաղմոս 7:8-10) «Միթէ յաւէտ մերժելո՞ւ է Տէրն ինձ, եւ այլեւս չի՞ շարունակելու բարեհաճ լինել:»

**«Կամ ընդմի՞շտ զրկելու է ինձ իր ողորմութիւնից**, եւ դադարեցնելո՞ւ է խօսքն իր սերնդից սերունդ:

«Կամ այլեւս մոռանալո՞ւ է Աստուած գթալ ինձ, եւ բարկութեամբ մերժելո՞ւ է գթութիւնն իր Հանգիստ:»

(Ողբ 3:18) «**կորաւ իմ արիութիւնը, եւ իմ յոյսը՝ առ Տէր**:»

(Ղուրան 39:53) «Օվ, իմ ծառաներ, ովքեր ոտնահարել են իրենց հոգիները. Մի խուսափեք Ալլահի ողորմածությունից, քանի որ Ալլահը ներում է բոլոր մեղքերը, քանի որ նա Ամենաներող, Ամենաողորմածն է:»

(Թագավորություններ Դ 19:16) «**Տէ՛ր, ակա՛նջ դիր ու լսի՛ր, բա՛ց աչքերդ ու տե՛ս**, լսի՛ր Սենեքերիմի խօսքերը, որ մարդ էր ուղարկել նախատելու կենդանի Աստծուն:»

(Ղուրան 49:18) «Իրավմամբ, Ալլահը տեղյակ է երկինքների և երկրի անտեսանելիին և Ալլահը լավատեղյակ է ամենին, ինչ դուք գործում եք:»

(Ղևտական 26:44) «Երբ նրանք իրենց թշնամիների երկրում էին, ես նրանց անտես չարեցի եւ ոչ էլ զզուեցի նրանցից **նրանց հետ իմ կապած ուխտը լուծելու համար**, որպէսզի չոչնչացնեմ նրանց, քանզի ես եմ նրանց Տէր Աստուածը: »

(Սաղմոս 88:35և 89:39-40 և 47) «Ոչ էլ իմ ուխտը կ՚անարգեմ,կամ կ՚արհամարհեմ այն, ինչ դուրս է գալիս իմ շրթունքներից:»

«Բայց արդ, դու մերժեցիր, անարգեցիր ու գետին տապալեցիր քո օծեալին:

«Հրաժարուեցիր քո ծառայի ուխտից, նրա սրբութիւնը հողին հաւասարեցրիր:

**«Մինչեւ ե՞րբ պիտի երեսդ շրջես իսպառ, եւ բարկութիւնդ պիտի բորբոքուի՞ հրի պէս:»**

(Ղուրան 30:6) «Այն Ալլահի խոստումն է: Ալլահը երբեք չի ձախողում Իր խոստումը, սակայն մարդկանց մեծամասնությունը չգիտեն:»

(Փազավորություններ Բ 22:27) «Ընտրեալի հետ ընտրեալ պիտի լինես, իսկ ծուռի հետ՝ ծուռ:»

(Ղուրան 4:135) «Օվ դուք, ովքեր հավատացել են, ամուր կանգնենք արդարությանը որպես Ալլահի վկաներ, նույնիսկ ընդդեմ ձեզ կամ ձեր ծնողների կամ ազգականների:»

(Եբրայեցիներ 5:5) «Արդարեւ, հրեշտակներից որի՞ն երբեւէ ասաց. Դու իմ որդին ես,այսօր ես ծնել եմ քեզ:»

(Սաղմոս 2:7) « Տէրն ասաց ինձ. «Դու իմ որդին ես, ես այսօր ծնեցի քեզ:»

(Ղուրան 112:1) «Ասա. Նա Ալլահն է Միակը, Ալլաը, Հավերժ Կատարյալ, Նա չի ծնում, ոչ էլ Ծնվում է և չկա ոչինչ Նրա Նմանությամբ:»

(Ղուրան 23:91) «Ոչ մի որդի Ալլահը չի ծնել, ոչ էլ գոյություն ունի որևէ աստված նրա հետ:Եթե այդպես, ապա զգուշացեք, յուրաքանչյուր աստված կվերցներ այն, ինչ նա արարել էր և ոմանք կկառավարեյին

մյուսներին:» Փառք Ալլահին: Նա զերծ է ամեն տեսակի բաներից, որոնք վերագրում են Նրան:»

(Ղուրան 19:88) «Եվ նրանք ասացին.՛՛Ամենափառավորը Ծնել է որդի:»

«Իրավմամբ, դուք առաջ եք դրել մի հրեշավոր բան:Երկինքները պատրաստ են այրվել, երկիիրը ճեղքվել և լեռները ընկնել ավերակների, որ նրանք վերագրում են որդի Ամենափառահեղին:

Քանի որ Ամենափառահեղին հավասարազոր չէ, որ Նա որդի ծնի: Բոլորը երկինքների և երկրի վրա եկել են Ամենափառահեղին ծառա: Նա հաշիվ է առնում նրանցից, բոլորից և ճշգրիտ հաշվարկում է նրանց և նրանցից յուրաքանչյուրը միայնակ կգա Նրա մոտ դատաստանի օրը:»

(Ղուկաս 1:34-35) «Իսկ Մարիամը հրեշտակին ասաց. «Ինչպե՞ս այդ կը պատահի ինձ, քանի որ ես տղամարդ չեմ ճանաչում»:
« Հրեշտակը պատասխանեց եւ նրան ասաց. «Սուրբ Հոգին կը գայ քո վրայ, եւ Բարձրեալի զօրութիւնը հովանի կը լինի քեզ, որովհետեւ նա, որ քեզնից է ծնուելու, սուրբ է եւ Աստծու որդի կը կոչուի:»

(Ղուրան 19:20) «Ապա Մարիամն ասաց. «Ինչպե՞ս ես կարող եմ որդի ունենալ, քանի որ ոչ մի տղամարդ ինձ չի մերձեցել և ես պատվազրկված չեմ: »

Նա ասաց. «Այսպիսով, այդպես կլինի», Քո Տերը ասաց. «Այդ հեշտ է ինձ համար և մենք ցանկանում ենք նշել նրան որպես նշան մարդկանց և ողորմածություն մեզանից: Այդ խնդիր է, այդպես է որոշված:»

(Ելք 3:22 և 12:35-36) «Ամէն մի կին իր հարեւանից կամ իր հարեւանութեամբ բնակուողից **թող ուզի** ոսկէ ու արծաթէ անօթներ եւ զգեստներ: Դուք կը զարդարէք ձեր տղաներին ու ձեր աղջիկներին եւ այդպիսով կողոպտած կը լինէք եգիպտացիներին»:

« Իսրայէլացիներն արեցին այնպէս, ինչպէս իրենց հրամայել էր Մովսէսը. եգիպտացիներից նրանք ուզեցին ոսկեայ, արծաթեայ զարդեր ու զգեստներ: ՛՛Տէրը շնորհ պարգեւեց իր ժողովրդին եգիպտացիների առաջ. սրանք զարդեր տուին նրանց: Այսպիսով նրանք **կողոպտեցին եգիպտացիներին**:»

(Ղուրան 7:28) «Ասա. ՛Ոչ, Ալլահը երբեք չի պատվիրում, ինչ անվայել է. Արդյո՞ք դուք ասում եք Ալլահի,մասին այն, ինչ դուք չգիտեք:»

(Երկրորդ օրենք 5:9) «դրանց չերկրպագես ու դրանց չծառայես, որովհետեւ ես եմ քո Տէր Աստուածը՝ մի նախանձոտ Աստուած: Ես հայրերի գործած մեղքերի համար հատուցում եմ պահանջում նրանց որդիներից, ինձ ատողների երրորդ ու չորրորդ սերունդներից:»

(Եսայի 14:21) « Չա՛ր զաւակ, **պատրաստի՛ր քո որդիներին՝ իրենց հայրերի մեղքերի պատճառով**

սպանուելու համար, որպէսզի ոտքի չելնեն նրանք, չնուաճեն երկիրը եւ այն չլցնեն պատերազմներով»:

(Ղուրան 6 :164) « Յուրաքանչյուր ոգի ինքն իր արարքների արժանին է ստանում, ոչ ոք չի կրում մեկ ուրիշի լուծը:»

(Եզեկիել 9:5-6) «Միւսներին էլ ինձ լսելի ձեւով ասաց. «Նրա յետեւից քաղա՛ք գնացէք ու կոտորեցէ՛ք:

« Գթասիրտ աչքով մի՛ նայէք. մի՛ խղճաք ծերին ու մանկան, կոյսին ու երիտասարդին: Կանանց էլ կոտորեցէ՛ք-ջնջեցէ՛ք: Բայց ում վրայ որ նշան կայ՝ չմօտենա՛ք: Սկսեցէ՛ք իմ սրբարանից»: Եւ սկսեցին ծեր մարդկանցից, որոնք տաճարի ներսում էին:»

(Թուեր 31:2 և7 -10 և 15-18) «Իսրայէլացիների վրէժը մադիանացիներից ա՛ռ եւ դրանից յետոյ միացի՛ր քո ժողովրդի մեռելներին»

« Եւ նրանք ճակատամարտ մղեցին մադիանացիների դէմ, ինչպէս Տէրն էր հրամայել Մովսէսին: Նրանք կոտորեցին արական սեռի բոլոր մարդկանց. « բացի սրախողխող եղած մադիանացիներից, նրանք սպանեցին նաեւ մադիանացիների թագաւորներ Եւինին, Սուրին, Րոկոմին, Ուրին եւ Ռոբոքին՝ Մադիամի հինգ թագաւորներին: Բացի նրանց կոտորելուց, սրախողխող արեցին Բէորի որդի Բաղաամին,

«գերեվարեցին **Մադիամի կանանց, նրանց զաւակներին**, քշեցին տարան նրանց անասունները, նրանց ամբողջ ունեցուածքն ու գոյքը աւար առան:

«Հրկիզեցին նրանց բոլոր քաղաքները՝ տներով հանդերձ, ինչպէս նաեւ նրանց աւանները:

«Ինչո՞ւ էք կենդանի թողել բոլոր կանանց:

«Չէ՞ որ սրանք էին, որ Բաղաամի խորհրդով կոտորեցին իսրայէլացիներին, որոնք յանուն Փոգորի շեղուեցին Տիրոջից եւ արհամարհեցին նրա խօսքը, եւ Տիրոջ ժողովուրդն ստացաւ այդ պատիժը:

**«Արդ, կոտորեցէ՛ք արական սեռի բոլոր մարդկանց, նաեւ այն բոլոր կանանց, որոնք կենակցել են տղամարդու հետ:**

«Կը խնայէք միայն այն կանանց, որոնք տղամարդու հետ չեն կենակցել:»

(Հադիս) Մարգարե Մուհամմեդը ասաց իր բանակին, մինչ մարտի գնալը. «Մեկնեք հանուն Ալլահի և Նրա օգնությամբ և մի սպանեք որևէ տարեցի ոչ երիտասարդի,ոչ երեխայի, ոչ կնոջ: Սակայն բարիք գործեք, քանի որ Ալլահը սիրում է նրանց,ով բարիք է գործում:»

(Հռոմեացիներ 2:28) «Եւ ի բնէ անթլփատ մարդը, օրէնքը կատարելով, պիտի դատի քե՛զ, որ, գրաւոր օրէնքն

ունենալով եւ թլփատուած լինելով հանդերձ, մեղանչել ես օրէնքի դէմ:»

(Ղուրան 29:1) «Արդյո՞ք մարդիկ մտածում են, որ նրանք հանգիստ կմնան ասելով Մենք հավատում ենք և նրանք փորձության չեն ենթարկվի: Սակայն Մենք փորձել ենք նրանցից առաջ գտնվողներին և Ալլահը անշուշտ գիտի նրանց, ովքեր անկեղծ են նրանցից, ովքեր կեղծ են:»

(Մատթեոս 5:39-40) «Իսկ ես ձեզ ասում եմ. չարին հակառակ չկանգնե՛լ. այլ եթէ մէկը քո աջ ծնօտին ապտակ տայ, նրան մի՛ւսն էլ դարձրու: «Եւ եթէ մէկը կամենայ քեզ բռնադատել եւ քո շապիկն առնել, նրան քո բաճկո՛նն էլ թող:»

(Ղուրան 42:40) «Վնասի փոխհատուցումը վնասն է, որը աստիճանով հավասար դրան, սակայն, եթե անձը ներում է և հաշտվում, նրա պարգևն է Ալլահի մոտ, քանի որ Ալլահը չի սիրում նրանց, ովքեր չարիք են գործում:»

(Ղուրան 24:22) «Թող նրանք ներեն և ներողամիտ լինեն, արդյո՞ք դուք չեք ցանկանում, որ Ալլահը ների քեզ: Քանի որ Ալլահը ամենաներող, ամենաողորմածն է:»

## ՄԻ ԿՆՈՋ ՄԵՂԱԴՐԵԼ ԵՆ ԱՆԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԵՋ ԱՌԱՆՑ ՎԿԱՆԵՐԻ.

### Աստվածաշնչյան, թե՞ Ղուրանական լուծումը.

(Ղուրան 24:6-9) «Իսկ ինչ վերաբերում է նրանց, ովքեր մեղադրանք են ներկայացնում իրենց կողակիցների դեմ և իրենց վկայությունից բացի ուրիշ ոչ մի օժանդակություն չունեն – Նրանց միակ վկայությունը կարող է ընդունվել, եթե նրանցից մեկը վկայում է չորս անգամ, Ալլահի անունով երդվելով, որ նա միայն ճշմարտությունն է ասում. Եվ հինգերորդ երդումը պետք է լինի, որ թող նա ենթարկվի Ալլահի ցասումին, եթե նա ստում է: Սակայն, եթե այդ կկասեցնի նրա պատիժը[1], եթե նա երդում տա չորս անգամ Ալլահի անունով, որ նա սուտ է ասում: Եվ հինգերորդ երդումը պետք է լինի, որ թող Ալլահի ցասումը [2] լինի նրան, եթե նա սուտ է ասում:[3]

## Աստվածաշնչյան լուծումը:

(Աստվածաշունչ) «Եվ Տերը խոսեց Մովսեսի հետ, ասելով, խոսիր Իսրայելի զավակների հետ և ասա նրանց, եթե որևէ տղամարդու կին շեղվում է և ոտնահարություն է գործում ընդդեմ նրա և տղամարդը մարմնավոր մերձենում է նրան և այդ նրա ամուսնու աչքից թաքուն է և նա մերձենում է և կինը պղծվում է և

[1] Այս կյանքում քարկոծումից;

[2] Ցասումը ավելի լուրջ է, քան անեծքը:

[3] Դրանից հետո, դատավորը նրանց կառանձնացնի և եթե հղիանա, նա կկրի մոր ընտանիքի անունը:

գոյություն չունի վկա ընդդեմ նրա, ոչ էլ նրան տեսել են վարքով և տղամարդու մոտ աճում է խանդի ոգին և նա խանդում է իր կնոջը և կինը պղծվում է :Կամ, եթե խանդի ոգին գալիս է նրան և նա խանդում է իր կնոջը և կինը պղծության չի ենթարկվում, ապա տղամարդը բերում է իր կնոջը քահանայի մոտ, նա պետք է առաջարկի նրա համար սննդի մեկ տասներորդ մասը : Տղամարդը չպետք է ձեթ լցնի դրա վրա, ոչ էլ դնի կնդրուկ, քանի որ այդ խանդի ներկայացում է, որը հանդիսանում է դավաճանության հիշողության ներկայացում:

Եվ քահանան պետք կնոջը մոտ բերի և նստեցնի Տիրոջ առջև. և քահանան պետք է վերցնի սուրբ ջուր խեցեղեն տարրայով և վերցնի հող, որը գետնին է և դնի այդ ջրի մեջ:

Քահանան պետք է նստեցնի կնոջը Տիրոջ առջև և բացի կնոջ մազերը և դնի հիշողության առաջարկը նրա ձեռքերի մեջ, որը հանդիսանում է խանդի առաջարկությունը և քահանան իր ձեռքերի մեջ պետք է ունենա դառը ջուր, որը հանդիսանում է անեծքի պատճառ:

Եվ քահանան պետք է մեղադրի նրան երդման միջոցով և ասի կնոջը, եթե ոչ մի տղամարդ չի մերձեցել քեզ, և եթե դու չես աղտոտվել մեկ ուրիշի հետ բացառությամբ քո ամուսնու, ապա զերծ մնա այս դառը ջրից, որը անեծքի պատճառ է:

Սակայն, եթե դու շեղվել ես մեկ այլ տղամարդու կողմ, բացառությամբ քո ամուսնու և եթե դու պղծվել ես և մեկ այլ տղամարդ մերձեցել է քեզ, բացառությամբ քո ամուսնու, ապա քահանան պետք է մեղադրի կնոջը անեծքի երդումով և քահանան պետք է ասի կնոջը. Տերը քեզ անեծք է տվել և խոսք քո մարդկանց, որ Տերը նեխման կենթարկի քո սրունքները և քո որովայնը կուռչի:

Եվ այս ջուրը, որը անեծքի պատճառ է, կանցնի քո սրվակներով, որպեսզի ուռճացնի քո որովայնը և նեխման կենթարկի սրունքները և կինը պետք է ասի Ամեն, Ամեն:

Եվ քահանան պետք է գրի այս անեծքները գրքի մեջ և պետք է ցողի դրանք դառը ջրով:

Եվ նա պետք է խմեցնի կնոջը դառը ջուրը, որը անեծքի պատճառ է և ջուրը, որը անեծք է տալիս պետք է թափանցեն նրա մեջ և դառնան դառը:

Այնուհետ քահանան պետք վերցնի խանդի առաջարկությունը կնոջ ձեռքից և պետք է թափահարի այն Տիրոջ առջև և առաջարկի այդ զոհասեղանի առջև:

Եվ քահանան պետք է առաջարկության պատառից մի բուռ վերցնի, նույնիսկ եթե այն հիշողություն է և այրի այն զոհասեղանի մոտ և այուհետ պետք է կնոջը խմեցնի այն:

Եվ նա պետք է խմեցնի ջուրը, այուհետ պետք է սպասել, որ եթե կինը պղծության է ենթարկվել և ոտնահարել է ամուսնուն, ջուրը, որը անեծքի պատճառ է պետք է անցնի նրա մեջ և դառնա դառը և նրա որովայնը պետք է ուռչի և սրունքները նեխի և կինը պետք է իր ազգակիցների մեջ դառնա անիծված:

Եվ, եթե կինը պղծության չի ենթարկվել, մաքուր է, ապա նա պետքէ ազատ արձակվի և պետք է մտածի արդյունքի մասին:

## ՅՈԲԸ ԱՆԻԾՈՒՄ Է ԱՍՏԾՈՒՆ

**Յոբը անիծում է իր Տիրոջը, համբերությունը կորցնելուց հետո.**

(Յոբ 4:18) «եթէ չի հաւատում իր ծառաներին, իսկ հրեշտակների վրայ խոտոր բաներ է նկատում:»

(Յոբ 7 :17-21) «Եւ ի՞նչ է մարդը, որ դու այդքան մեծարել ես նրան, կամ էլ՝ որ միտքդ ես սեւեռում իր վրայ,

«կամ էլ՝ որ քննում ես նրան մինչ առաւօտ, հանգստի ժամերին, փորձում միշտ:
«Մինչեւ ե՞րբ դու ինձ չես թողնելու, արձակելու չես ինձ, մինչեւ որ ցաւերով կուլ տամ ես լորձունքս:

«Թէ ես մեղք գործեցի՝ ի՞նչ կարող եմ անել քեզ, որ միտքն ես մարդկանց քննում միշտ: Ինչո՞ւ ես ինձ դարձրել քեզ ոստխ, որ լինեմ քեզ համար ես մի բեռ:

«Ինչո՞ւ չես ներել դու յանցանքներս, չես թողել մեղքերն իմ: Եւ ահա երկիր եմ դառնում ես շատ կանուխ. այլեւս չեմ լինի»:

(Յոբ 9: 27-28 և 32-34) «Եթէ ասեմ, թէ մոռանալու եմ զանգատուելը, երեսս գետին խոնարհելով՝ հեծեծեմ,

« դողը կը պատի իմ բոլոր անդամները, քանզի գիտեմ, որ ինձ անմեղ չես համարելու:

«քանզի դու մարդ չես ինձ նման, որի հետ դատ անէի ես, եւ որպէս հաւասար դատաստանի գայինք:

«Ո՛ւր է թէ մի միջնորդ լինէր, դիմացս զար ու դատ անէր երկուսիս միջեւ:
«Նա անպայման կը հեռացնէր ինձանից խարազանը, եւ դրա ահն ինձ չէր սարսափեցնի.»

(Յոբ 10:1-2) «Հծծիւնով կը հասցնեմ նրան իմ խօսքերը. կը խօսեմ թախծոտած իմ հոգու դառնութեամբ:

«Ու կ՚ասեմ. «Տէ՛ր, մի՛ սովորեցրու ինձ, որ լինեմ ամբարիշտ». եւ ինչո՞ւ դատեցիր[1] այսպէս ինձ:»

(Յոբ 10:8 և 14-16) « Քո ձեռքն է արարել ու ինձ ձեւ է տուել, բայց յետոյ դարձել ես, զարկել ինձ

---

[1]Այստեղ գործածվել Նոր Թարգմանության տարբերակը, քանի որ հեղինակը գտել է այն ավելի դյուրամարս, քան Արքա Ջեյմսի տարբերակը:

«Մեղանչեմ թէկուզ ես՝ կը պահես. չես պահել զերծ դու ինձ՝ մեղքերից:
« Ամբարիշտ թէ եղայ՝ օ՜, վա՜յ ինձ. արդար էլ թէ լինեմ՝ չեմ կարող հայեացքս բարձրացնել, զի մէջս անարգանք կայ լեցուն:

«Որսուած եմ իբր առիւծ, որին պիտ սպանեն: Ինձ դարձեալ չարաչար ջնջում ես:»

(Յոբ 12:6) «Բայց ով որ չար լինի՝ թող երբեք չյուսայ, թէ անպարտ կը լինի: Եւ ով որ բարկացնի Տիրոջը, նրանից մի՞թէ չի պահանջուի պատասխան:»

(Յոբ 12:21-25) « Անարգանք թափում իշխանի գլխին եւ խոնարհներին բժշկում է նա:

« Երեւան հանում խորքը խաւարի եւ լոյսի բերում ստուերը մահի:
« Թափառական է դարձնում ազգերին, կործանում նրանց. սփռում է նրանց, եւ՝ առաջնորդում:

« Երկրի իշխանաց սիրտն է շուռ տալիս, մոլորեցնում է ճանապարհներին, որոնց ծանօթ չեն:

« Խաւարի միջին միշտ կը խարխափեն ու չեն տեսնի լոյս եւ հարբածի պէս միշտ կը մոլորուեն:»

(Յոբ 13:3 և 7) «Սակայն Տիրոջ հետ պիտի խօսէի, ես նրա առաջ պիտի կանգնէի, թէ որ կամենար,

« Չէ՞ որ մեր Տիրոջ առաջ էք խօսում, նրա յանդիման նենգ բարբառում էք:»

(Յոբ 13:13) «Լռեցէ՛ք, զի ես եմ խօսելու, զտնելու անդորր իմ զայրոյթից:»

(Յոբ 13:21) «Ե՛տ քաշիր ինձնից ձեռքդ. եւ ահդ թող ինձ չսարսափեցնի:»

(Յոբ 16:12-18) « Տէրն ինձ մատնել է ձեռքն անիրաւի, ամբարիշտների մէջ է գցել ինձ:

« Մինչ խաղաղ էի՝ քայքայել է ինձ, քաշել մազերիցս ու փետել դրանք:
« Թիրախ կանգնեցրել, տէգեր են պատել: Երիկամներս են խոցել անխնայ, գետին են թափել մաղձն իմ.

ինձ կործանել են՝ հարուած հարուածի վրայ իջեցնելով: Վրաս են թափուել զօրաւորները,
« եւ քուրձ են կարել մորթիս վրայ նրանք:
« Հանգել է գետնին զօրութիւնը իմ. լալուց խաշուել են աղիքները իմ. մահուան ստուերն է իջել կոպերիս:
« Անիրաւութիւն չկար իմ ձեռքին,եւ անարատ էր աղօթքն իմ հոգու:»

(Յոբ 19:6-11) «Արդ, իմացէ՛ք դուք, որ իմ Տէրն է ինձ տակնուվրայ արել, վրաս անխնայ պատնէշ բարձրացրել:

« Ահա ծաղրւում եմ նախատինքներով՝ բերան չեմ բացում. աղաղակեմ էլ՝ եւ ոչ մի տեղից ինձ համար արդար դատաստան չկայ։

«Շրջապատուած եմ՝ չեմ կարող խոյս տալ։ Խաւարն է չոքել համակ ինձ վրայ։
« Մերկացրել է ինձ փառքերից բոլոր, հանել իմ գլխից պսակը նաեւ։
« Պաշարել է ինձ բոլոր կողմերից, ու կործանուած եմ. յոյսս կտրել է յաւէտ՝ ծառի պէս։

« Սաստիկ բարկութեամբ է վարուել ինձ հետ ու իր թշնամին է համարել ինձ։»

(Յոբ 21:7 -9 և 14) « Այդ ինչպէ՞ս է, որ ամբարիշտները միշտ ողջ են մնում, տարիքը առնում, նոյնիսկ լողում են հարստութեան մէջ։
« Նրանց սերունդը ըստ ցանկութեան է, եւ զաւակները՝ աչքների առաջ։
«Նրանց տները՝ երջանկութեան մէջ, եւ ոչ մի տեղից՝ դոյզն ինչ երկիւղ։ Տիրոջից տանջանք չի հասնում նրանց:

«Եւ Տիրոջ կ՚ասեն. «Հեռո՛ւ ինձանից. քո ուղիները չեմ կամենում ես ճանաչել հիմա։»

(Յոբ 21:19) « Իր ունեցուածքը վերջ կը տայ մի օր իր որդիներին. կը հատուցի եւ ճանաչել կը տայ Տէրը հէնց իրեն։»

(Յոբ 24:2-4 և 12) «Հօտը հովուի հետ յափշտակեցին, «որբուկի էշը քշեցին տարան ու իւրացրին այրու եզն անգամ:
«Շեղեցին խեղճին ուղիղ շաւիղից. երկրի հեզերին, բոլորին մէկտեղ, ընկճեցին նրանք, ու սրանք դարձան մի-մի վայրի էշ դաշտերի վրայ:

«Մարդիկ զրկուեցին քաղաքից, տնից. հոգիներն մանկանց խիստ հեծեծեցին: Իսկ Նա ինչո՞ւ չի այցելում սրանց:»

(Յոբ 30:20-21) «Քեզ դիմեցի ես, բայց չլսեցիր. կանգնեցին նրանք ու դիտեցին ինձ:
« Իմ նկատմամբ դու անողորմ եղար. ինձ[1] հզօր ձեռքովդ հարուածեցիր դու:»

---

[1]Ուստի դուք տեսաք Աստվածաշունչը խոսելիս, մի՞թե դուք մինչ այժմ կարծում եք, որ այս Նրա Աստվածաշունչն է:

□ Մենք ձեր հայտեցողության ենք թողնում, որպեսզի դուք ինքներդ պատճառաբանեք:

□ Ինչպե՞ս կարող է Աստծո գիրքը պարունակել անեծք ընդդեմ Աստծո:

□ Մեր կողմից բավական ծայրահեղ կթվա պաշտպանել այս սխալները, քանի որ մենք ավելի լավ գիտենք, որ այս խոսքերը երբեք չեն կարող



---

արտաբերվել Աստծո կողմից, պարզապես այն պատճառով, որ Աստված Իր Գրքի մեջ փառաբանում է Իրեն, քանի որ Նա արժանի է ամեն փառաբանության, ուստի Նա երբեք չի պախարակել Իրեն կամ ուրիշներին թույլ տվել անիծել Իրեն Իր գրքի մեջ:

 Այս ամոթալի խոսքերը գրել է որևէ խաբեբա, թող Աստված այրի նրա մատները, որոնք գրել են այս կեղծ խոսքերը:

 Երբ Պողոսը հայտնել է, որ ՛՛Բոլոր գրերը ոգեշնչվել են Աստծո կողմից, նա չէր կարող տեսնել Աստծո դեմ այս խոսքերը, որոնք հասցեագրվել են նրան, այլ ոչ թե Նրանից:

